1916 № 7.—*Փետրուարի 7* ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *րուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.* *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.* *Արտասահման՝* տարեկան 5 *ր.* կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաշարդեան հրապար. № 7.* Հեռախօս № 29.

*Փոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* 10 *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1916 Թ.*

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն. 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն, 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ։ 5. Փոստարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած է 16 մեծադիր երեսներից և լոյս կըտեսնէ կիրակի օրերը։*

*ՄԻՆՉԵՒ ԱՅԺՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ ԱՇԽԱՏԱԿՑԵԼՈՒ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ԻՆ*

*Աբեղեան Մանուկ, Ալթունեան Գէորգ, Աղասարեան Բուղդան (բժշկապետ), Այվազեան Բագրատ, Բաշինջաղեան Գէորգ (նկարիչ), Բերբերեան Մինաս, Դեմիրճեան Դերենիկ, Եսայեան տիկ. Զապէլ, Դաւթեան Յով., Էգիլեան Գուրգէն, իշխ. Թումանեան Գէորգ, իշխն. Թումանեան Մարիամ, իշխ. Թումանեան Միքայէլ, Թումանեան Յովհաննէս, Լէօ, Խանզադեան Ցոլակ, Ղանայեանց Սա., Կարապ (Թաշճեան Կ.), Կոստանեան Յովհաննէս, Ծուղուրեան Յարութիւն քահանայ, Մալխասեան Ստեփան, Մանուէլեան Միքայէլ, Մառէնճեան Մամբրէ, Մելեան Մեսրոպ քահ., Մուսայէլեան Հ., Յովհաննիսեան Միքայէլ, Յարութիւնեան Իսահակ, Յովհաննիսեան Հայկ-Յովհաննիսեան Տիգրան Նար-Դոս, Նաւասարդեան Բագրատ (բժշկապետ), Շարաֆեան Ալեքսանդր, Շիրվանզադէ, Չալխուշեան Գր., Պետրոսեան Յարութիւն. Ջամալեան Արշակ, Սպենդիարեան Յովհաննէս, Տէր-Դանիէլեան Դաւիթ, Տէր-Գէորգեան Վահան, Տէր-Միրաքեան Յովհաննէս, Տոտոմեան Վ., Փիրալեան Յարութիւն, Փիրումեան Տիգրան, Քամալեան Սարգիս, Օլթեցեան Արամ։*

Խմբագիր՝ Ս. Յարութիւնեանց

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# ԷՐԶՐՈՒՄԸ

Էրզրումը վերցուեց...

Այս երկու խօսքերը փետրուարի 3-ին կայծակի արագութեամբ տարածուեցին Թիֆլիսում... Մի ակնթարթում մոռացուեց մոխրագոյն առօրէութիւնը, քաղաքն ընդունեց տօնական կերպարանք։ Փողոցները լցուեցին հրճուող մարդկանցով, իսկ երեկոյեան ժողովրդական սրտառուչ և ջերմագին ցոյցեր տեղի ունեցան Փոխարքայի պալատի առջև...

Նոյն համառօտ լուրը նոյն արագութեամբ և հրճուանքով գնաց ոգեորելու ամբողջ Կովկասը։ Հրճուանքով կը լսէ նրան և մեծ Ռուսաստանը, ցնծութիւն կը պատճառէ նա բազմամիլիոն ռուս բանակին, որ Ռիգայի ծոցից մինչև Ռումինիա կանգնած է ուժեղ թշնամու դիմաց։ Կովկասեան փառաւոր յաղթանակը ոգեորութեան և վճռականութեան նորանոր ալիքներ կը թափէ այդ ռազմական վիթխարի մարմնի երակների մէջ իբրև առհաւատչեայ, որ ընդհանուր և մեծ յաղթութիւնը հեռու չէ։

Ռուսական ճակատից նոյն ուրախութիւնը կը թռչէ հեռու, կը հաղորդուի դաշնակից բանակներին Բելգիայում, Շամպայնում, իտալական ճակատի երկարութեամբ, Սալոնիկում, Եգիպտոսում, Պարսից Ծոցի ափին։ Ամեն տեղ Էրզրումի անկումը կընդունուի ծափահարութեամբ։ Ռուսական քաջարի զօրքի ձեռքն է անցնում Բարձր Հայքի մայրաքաղաքը, հայկական Կարինը, մի ժամանակ յունական Թէոդոսուպոլիսը և ամեն ժամանակ առաջնակարգ ամրութիւն Էրզրումը։

Ռազմագիտական տեսակէտից դա Փոքր Ասիայի բանալին է։ Բարձր Հայքը ամենաբարձր երկիրն է Հայկական ամբողջ Բարձրավանդակի վրայ, որ և տիրում է Միջերկրականի և Պարսից Ծոցի ափերին։ Էրզրումի անկումով ռուսների ձեռքն է անցնում Հայաստանի ամբողջ բարձր սարահարթը։ Չը կայ մի ուրիշ ամրութիւն, որ Էրզրումի չափ հզօր յենարան դառնայ թիւրքական բանակի համար։

Պակաս կարևոր չէ մեծ յաղթանակի քաղաքական նշանակութիւնը։ Արևելքը ուժի առջև միայն գիտէ խոնարհուել։ Թիւրքական ահեղ ամրութեան անկումը նորից բարձրացնում է ռուսական զէնքի հեղինակութիւնը և ցոյց է տալիս արևելցիներին, թէ որքան ճարպիկ կերպով խաբում էր նրանց գերմանական քաղաքագիտութիւնը ամեն տեսակ ֆանտաստիք խոստումներ անելով, Ռուսաստանի և նրա դաշնակիցների ույժը թուլացած ու ջլատուած ցուցադրելով։ Յայտնի է թէ այս հողի վրայ ինչ մթնոլորտ էր ստեղծւում մեր հարևան երկիրներում. յայտնի է մանաւանդ մեզ, հայերիս, մեր ականջին հասնող սպառնալիքներից...

Առանձնապէս հայ ժողովուրդն է որ պիտի սրտի գոհունակութեամբ տօնէ, ուր և լինի նա, Բարձր Հայքի սրտում կատարուած փայլուն եղելութիւնը։ Թիւրքական արիւնոտ ճանկերից դուրս է կորզուել մեր պատմական Կարինը, հայութեան ամենանշանաւոր կենտրոններից մէկը, որ սիրելի յիշատակներ է թողել մանաւանդ հայոց ժամանակակից պատմութեան մէջ, իբրև մեր ազատագրական շարժման առաջին կրակարան։

Իսկ դու, յաւիտենական նահատակ, թիւրքահայ ժողովուրդ... Մի անգամ էլ կոտորուեցիր դու, անհեթի չափերով, բարբարոսութեան ամենադաժան միջոցներով։ Կոտորուեցիր, որպէս զի ցոյց տաս թէ երբ մի պետութեան զինուած ույժը, նրա զօրքը գազանային հերոսութիւն ցոյց է տալիս կանանց, երեխաներին, ծերերին կոտորելու մէջ, այդպիսի զօրքը փրկել չէ կարող և Էրզրումի զոռ ամրութիւններն անգամ... Հաւատա, ուրեմն, արիւնաթաթաւ նահատակ, որ կայ հատուցում և դահիճներից ամենավայրագների համար անգամ...

Թիւրքական ամրութեան անկման լուրը կը հասնէ տարագիր, անօք ու անինչ մնացած թիւրքահայի ականջին Անդրկովկասի քաղաքներում և գիւղերում, Միջագետքի և Սիրիայի անապատներում, Միջերկրականի ափերում, մի խօսքով ամեն տեղ, ուր քշել տարել է հայի ճակատագիրը հայ ժողովրդի փշրուած ու մանրուած բեկորները։ Կանգ չի առնի համբաւը և հիւանդանոցների, որբանոցների շէմքերում, և ամեն տեղ, առողջ թէ հիւանդ, ապրող թէ մեռնող, ամենքը, ամենքը կըմխիթարուեն այն գիտակցութեամբ, թէ ամենակարող չէ գազանութիւնը և անմեղների, զոհերի համար պահուած է հատուցում, անողոք, արդար հատուցում... Կը մտնէ յաղթանակի լուրը և թիւրքական հարէմների խորքը, ուր հազարաւոր գերի հայ աղջիկներ ու երեխաներ ողբում են իրանց սև օրը։ Եւ դրանց համար էլ, նոյն իսկ դրանց համար էլ վրէժի, յոյսի քանի քանի սփոփիչ շեշտեր կը լինեն այդ լուրի մէջ։ Յոյսը, այո, կը ծաղկէ և բիւրաւոր անյայտ ու անյիշատակ գերեզմանների վրայ, հազարաւոր ողջ այրուածների մոխրակոյտերի վրայ...

*Մխիթարուենք և յուսանք։*

*Այս երրորդ անգամն է որ Էրզրումն անցնում է ռուսների ձեռքը։ Այս երրորդ անգամն է որ թիւրքերը հեռանում են Էրզրումից։ Յուսանք և ցանկանք, որ նրանք այլ ևս երբէք չը վերադառնան այնտեղ և առաջնակարգ ամրութիւնը գոռ ու անյաղթելի բարձրանայ իբրև հովանաւոր խաղաղ աշխատաւոր կեանքի և անփոյթ պահապան արդարութեան այն դժբախտ, բայց գեղեցիկ երկրում, որ դարերով տանջուած ու աւերակ է գազանութեան, արեան պաշտամունքի ճանկերում...*

*Մութ մութ ամպերի ետևից—հաւատանք—արշալոյս պիտի բացուի...*

## ՆՈՒԷՐՆԵՐ

### «Համբաւաբեր»-ի տարածման համար

*Բաթումի Բարեգ. Ընկ. Վարչութիւնը ցանկանալով նպաստել «Համբաւաբեր»-ի տարածման գործին՝ որոշել է տասն օրինակ ուղարկել հետևեալ հաստատութեանց. Բաթումի հայ լուս. ծխ. դպրոցին, հայ կաթոլ. ծխ. դպրոցին, հայ կաթոլ. կրթական ընկերութեանը, «Մի բաժակ թէյ» ընթերցարանին, Կ. Հ. Բ. Ը-թեան և Հայոց Կենտ. Կոմիտէի ապաստարանին, Բաթումի շրջանային բանտի գրադարանին, Արդուինի Հասարակական գրադարանին, Արդանոյշ՝ Հ. Ստեփան վարդապետին դպրոցի համար, Սաթլել-Ռաբաթ՝ Յովհաննէս Բերոբեանին հայոց դպրոցի համար և Օկրոպակերտ—Մկրտիչ քահ. Այվազեանին—հայոց դպրոցի համար։*

*Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ. 1) Բաքուի հանքատէր Ն. Մ. Շաղեդանեանից 40 ռ.— 10 օրինակի համար Շամախու թեմի դպրոցներին ուղարկելու. 2) Թիֆլիսի փաստաբաններ Խ. Ամիրաղեանից և Խ. Տէր-Խաչատրեանից 20 ռ.— 5 օրինակի համար։*

### ՀԱՅՈՑ ԳԻՒՂԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻՆ Ի ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

*«Համբաւաբեր»-ի խմբագրութիւնը յայտնում է, որ Կ. Հ. Բ. Ը-թիւնից նպաստ ստացող դպրոցներին ուղարկւում է շաբաթաթերթը։ Հայոց գիւղական միւս դպրոցները, որ կցանկանան ստանալ «Համբաւաբերը», բայց նիւթական միջոցներ չունեն, կարող են դիմել խմբագրութեանս յայտնելով իրենց պոստի հասցէն։*

# Հեռագրեր

## ԷՐԶՐՈՒՄԻ ԱՌՄԱՆ ԱՌԹԻՒ

*Կովկասի բանակի Գերագոյն Հրամանատարը Էրզրումը նուաճելու առթիւ բախտ ունեցաւ Թագաւոր Կայսրից ստանալու հետևեալ հեռագիրը՝*

*«Շնորհաւորում եմ Ձերդ Կայսերական Բարձրութեանը և Կովկասի բանակին Էրզրումը գրաւելու առթիւ։ Խնդրում եմ յայտնել քաջարի զօրքին Իմ ջերմ շնորհակալութիւնը նրանց դիւցազնական քաջութեան և ուրախութեան համար, որ պատճառեցին Ռուսաստանին տաճկական ամրութեան յաջող գրոհով»։*

*ՆԻԿՈԼԱՅ*

*ՊԵՏՐՈԳՐԱԴ.—Կովկասի Օգոստափառ Փոխարքայի ամենահպատակ հեռագիրը.*

*«Տէր Աստուածը Կովկասեան բանակի գերքաջարի զօրքերին այնքան մեծ օգնութիւն ցոյց տուաւ, որ Էրզրումը հինգ օրուայ անօրինակ գրոհից յետոյ վերցուած է։ Անպատմելիօրէն ուրախ եմ զեկուցանելու սոյն յաղթութեան մասին Ձերդ Կայսերական Մեծութեանը»։*

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

*Յունուարի 25-ին հրատարակուած երկու Բարձրագոյն ուկազներով հրամայուած է վերանորոգել Պետական Դումայի և Պետական Խորհրդի պարապմունքները փետրուարի 9-ից։ Արդէն սկսուել են նախնական պատրաստութիւնները—պատգամաւորների մեծ մասը հաւաքուած է Պետրոգրադում։ Մինիստրների խորհրդի նոր նախագահ Շտիւրմերը այցելել է Դումայի նախագահ Ռոձեանկոյին և նրա օգնականին։ Թէ այս այցելութիւնների ժամանակ և թէ ուրիշ առիթներով տեղի ունեցած յայտարարութիւններից ռուս մամուլը հետևցնում է, որ կառավարութեան այժմեան գլուխը թէև պատկանում է պետական գործիչների հին դպրոցին, բայց բարեացակամ վերաբերմունք է ցոյց տալիս դէպի ժողովրդական ներկայացուցչութիւնը։*

*ԹԱՆԳՈՒԹԻՒՆԸ.*

*Պետրոգրադում կազմակերպուած առանձին խորհրդակցութիւնը, բազմակողմանի կերպով քննելով մսի հարցը, որ ներկայումս ամենակարևոր երևոյթներից մէկն է Ռուսաստանի ներքին կեանքում, եկել է այն եզրակացութեան, որ թէև Ռուսաստանը դեռ հեռու է մսի ճգնաժամից, բայց ի նկատի առնելով մի շարք հանգամանքներ, ազգաբնակութիւնը պիտի պակասեցնէ մսի գործածութիւնը։*

*Այս միտքը ժողովրդականացնելու համար մտադրութիւն կայ դիմել ազգաբնակութեան հանրամատչելի հրատարակութիւններով, որոնց մէջ բացատրուած պիտի լինի, թէ միսը հարկաւոր է գործող բանակին, թէ գիւղատնտեսութեանը հարուածներ չըհասցնելու համար պէտք է այնպէս անել, որ գիւղացու անասունների մի փոքրիկ մասը միայն մորթուի և այլն։ Սակայն բաւական չը համարելով բարոյական միջոցներով ներգործելը, խորհրդակցութիւնը հարկաւոր է համարում, որ կառավարութիւնը շաբաթական երեք օր բոլորովին արգելէ միս մորթել, ծախել և գործածել բոլոր քաղաքներում և գիւղերում։ Ցանկալի է համարւում, որ միաժամանակ կառավարութիւնը միջոցներ ձեռք առնէ բանջարաբուծութիւնը զարգացնելու համար։*

*Թանգութեան ամենագլխաւոր պատճառներից մէկն էլ երկաթուղային պաշտօնեաների գեղծումներն ու կաշառակերութիւններն են։ Վերջերս կառավարութիւնը սկսել է խիստ միջոցներ գործադրել գեղծարար պաշտօնեաների դէմ։ Ձերբակալւում են յանցաւորները։ Խուզարկութիւններ են կատարւում նորանոր գեղծումներ երևան հանելու համար։*

*Բնակարանների օր աւուր աճեցող թանգութեան դէմ կառավարութիւնը մշակել է մի շարք պարտադիր կանոններ, որոնք արդէն հաստատուած և մտցուած են Կովկասում։ Այդ կանոններով բնակարանային վարձի չափը կարող է լինել այն, ինչ տրւում է եղել 1915 թ. յունուարի 1-ին։ Հիմնւում են բնակարանային յանձնաժողովներ՝ տանտէրերի ու բնակարան վարձողների միջև յարաբերութիւնները կանոնաւորելու և վերոյիշեալ պարտադիր կանոնները գործադրելու համար։*

## ՏԱՃԿԱՀԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ԴՐՈՒԹԻՒՆԸ

—

*Վերջին երեք ամիսների ընթացքում երկու անգամ առիթ եմ ունեցել մօտից ծանօթանալու տաճկահայ գաղթականների իսկական դրութեան։ Նոյեմբերի սկզբին ես այցելեցի նրանց կենտրոնները Երևանից մինչև Սալմաստի շրջանը և Վանի սահմանները. երկրորդ անգամին յունուարի սկիզբը՝ Երևանի և Էջմիածնի սահմաններում։*

*Այդ երկու այցելութիւններից իմ կրած տպաւորութիւնները գրելուց առաջ, պէտք է ասեմ, որ Անգլիայում ես տեսել էի 1914-ի սեպտեմբերից ի վեր խնամուող 200,000 բելգիացի փախստականների դրութիւնը, որոնք խնամւում էին անգլիացի վեհանձն ժողովրդի հիւրընկալութեամբ և անգլ. տեղական իշխանութիւնների մարդասիրական խնամքներով։ Յետոյ իմ ճանապարհի վրայ Պետրոգրադում, Խարկովում և այլ վայրերում ես տեսել էի ռուս և լեհ փախստականների դրութիւնը և իշխանութիւնների նրան ցոյց տուած խնամքը։ Բանի աշխարհը առաջանում է դէպի Արևելք և իջնում է դէպի հարաւ, կարծես նոյն համեմատութեամբ էլ նուազում են մարդկային բարեկեցութեան և նրբութեան յարմարութեան պայմանները։*

*Տաճկահայ նահանգների ազգաբնակութեան տնտեսական և բարոյական դրութեան ծանօթ եղողները գիտեն, որ 1914 թուի յուլիսին այժմ Անդրկովկաս ապաստանող հարիւր հազարաւոր փախստականներից շատ չնչին տոկոսը—գուցէ ոչ մէկը—կարօտ էր նպաստի և կամ ցանկանում էր ապրել պետական և անհատական բարերարութեամբ։*

*Այդ ողբալի օրերից մօտ 4 ամիս յետոյ, երբ ես նրանց տեսայ Երևանում ու Էջմիածնում ֆիզիքական և հոգեկան վրդովւած պայմանների մէջ և լարուած երեւոյթապէս անբացատրելի ջղայնոտութեամբ, գէթ ես իմ մտքումս վերականգնեցի տաճկահայ գաղթականների այն ժամանակուայ ողբերգական դրութեան պատկերը— նրանց վիրաւորուած ինքնասիրութեան տխուր և քանդւող պատկերը։*

*Երևանի գաղթականական որջերից մէկում ես հանդիպեցի երբեմն մի երջանիկ և կենսուրախ հայրենակցի։ Նրա միակ խոստմնալից զաւակը զոհ էր եղել թրքական նենգութեան. ինքը շրջապատուած երկու չափահաս աղջիկներով և հիւանդ պառկած գրեթէ դատարկ գետնի վրայ տնքում էր մի քրոնիկական հիւանդութիւնից։ Նա իր ժամանակին եղել է ազգային մտաւորական գործիչ, մի գաղափարական մարդ։ Եւ մի րոպէ մոռանալով իր անհատականութիւնը արտասուահեղձ հեկեկանքով ինձ ասաց, որ այնտեղ, ուր ինքն է ապրում այժմ, իրա տանը անյարմար էր նըկատւում նոյն իսկ կովերի համար։ Մեծ չափ անգամ զեղչելով այդ հայրենակցի համեմատութիւնից, ես համոզուած եմ, որ այդ մարդը հոգեկան այդ անմխիթար դրութեան և նիւթական պայմանների մէջ անկասկած պիտի մեռնի ուշ կամ կանուխ, անտէր թողնելով երկու աղջիկ և մարելով մի ընտանիքի վերջին կայծը։ Եւ եթէ նկատենք, որ հարիւրներով կարելի է համրել այդպիսի գաղթականների թիւը, որոնք անհեռատես մատակարարութեան հետեւանքով դատապարտուած են վաղահաս մահուան, մենք ըմբռնած կը լինենք ներկայի դժբախտ պայմանների կէսը։*

*Որ գաղթականական գործով հետաքրքրուող կովկասահայ մարմինների բարձրագոյն շրջանները տոգորուած են եղբայրակցական վեհ զգացմունքներով դէպի տարաբախտ գաղթականները, ծանօթ է նրանց, ով ուշադրութեամբ հետևել են այդ մարմինների գործունէութեան։*

*Եւ որովհետեւ հակառակ բարի ցանկութիւնների, գործի ընդհանուր ղեկավարութեան մէջ բացակայել են արդիւնաւէտ սկզբունքներ և դրութիւնը լիապէս ըմբռնելու հոգը, այդ պատճառով էլ նախաձեռնութիւնը անցել է մի շարք երկրորդական վարձկան պաշտօնեաների ձեռքը, որոնք գործին կապուած են աւելի անձնական շահի հրապոյրներից։ Մինչդեռ մարդկային բնաւորութեան տարրական հասկացողութիւնը թելադրում է, որ կովկասահայ արդէն կազմակերպուած մարմինները իրենց ձեռքում պահելով լայն ղեկավարութեան և կոնտրոլի գործը, երկրորդական դերեր և գործի կազմակերպման մանրամասները յանձնէին տաճկահայ գաղթականների մտաւորական ուժերին, որոնք իբրև աւելի ծանօթ իրենց կարիքներին և անցեալում նման փորձեր վարելու աւանդութիւնների վարժ՝ անկասկած աւելի ընդունակ էին ձեռնհասներին օգնելու գործին։*

*Երբ հազարաւոր բելգիացի գաղթականները խուժեցին Անգլիա, ի հարկէ շատ աւելի բախտաւոր ու երջանիկ պայմանների մէջ քան տաճկահայ գաղթականները, հազարաւոր անգլիացի ընտանիքներ իրենց տներում հիւրասիրեցին դժբախտ բելգիացիներին, և հազարներ էլ մինչև այսօր հիւրասիրում են առանց ոևէ փոխարինութեան։*

*Անդրկովկասում ընկերական և տնտեսական պայմանները լինելով հիմնապէս տարբեր, ի հարկէ չէր կարելի սպասել միևնոյն բանը տաճկահայ փախստականների վերաբերմամբ։ Արդեօք այս մետասաներորդ ժամին անգամ չէ՞ր կարելի փախստականական գործը դնել նոր մարդավայել հիմքերի վրայ։ Իւրաքանչիւր կարօտ գաղթականի համար նշանակել ամսական մի գումար և հրաւիրել ամսական որոշ վճարով իրենց տներում հիւրեր ընդունելու պատրաստ ընտանիքներ՝ վերցնելու այնչափ թւով գաղթականներ, որչափ իրենք կարող են տեղաւորել, և նրանց պահել իբրև իրենց ընտանիքի անդամներ։ Այդ ծրագիրը կարող է յաջողել, եթէ ամսական վճարը լինի որոշ չափով գոհացուցիչ։ Այդ պարագային գուցէ կը դադարին մահացութեան անսովոր չափերը. բժշկական անուանական օգնութեան, մեծ թւով պաշտօնեաների և ուրիշ անպէտք վատնումների գոյութեան իրաւունքը կը վերանայ ինքնըստինքեան և որոշ ճիգերից ու կազմակերպութիւնից յետոյ, գաղթականական գործը կստանայ գոհացուցիչ ընթացք։*

*Այդ ծրագիրը ի հարկէ կարելի է նախ փորձել մի գիւղի մէջ փոքր չափի վրայ և տեսնել նրա գործնական արդիւնքը։*

*Արևմտեան երկիրներում բարեգործութիւնը դարաւոր փորձառութիւններից յետոյ դրուած է բարոյագիտական-ընկերաբանական առողջ հիմունքների վրայ։ Այնտեղ թէ պետութիւնները և թէ հասարակական մարմինները բարեգործութիւն են անում ոչ թէ որոշ ժամանակով մարդկանց կեանքը պահպանելու համար, այլ հէնց առաջին վայրկեանից նրանք որոնում են միջոցներ՝ բարեգործութեանը տալու վերարտադրող բնաւորութիւն։ Նրանք ընթանում են կանխարգել (*prèventif*) բարեգործութեան միջոցներով —այն է, հնարաւորութիւն տալ բարերարուողներին ստեղծել ինքնապահպանման և իրենց սեփական աշխատանքով ապրելու միջոցներ։ Իսկ բարերարները վերջիններին մատակարարում են փոքր դրամագլուխ, աշխատանք, գործիքներ և այլն՝ մի ազնիւ և անկախ կեանք վերսկսել կարենալու համար։*

*Կիրարկելով այդ սկզբունքները մեր դժբաղդ իրականութեան մէջ, մենք կարող ենք որոշ չափով հնարաւորութիւն տալ արհեստաւորների, երկրագործների, փոքր խանութպանների վերաշինել իրենց տնտեսութիւնը և ազատել տնտեսական կախման անբարոյականացնող դրութիւնից։ Պատմական մի աղէտ դարմանելու համար անհրաժեշտ են մտածելակերպի ճկունութիւն և սովորականից աւելի հեռատեսութիւն և հետևողականութիւն։*

*Ուրեմն փորձենք տաճկահայ փախստականներին տալ անկախ ապրուստի միջոցներ։*

*Արշակ Սաֆրաստեան*

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

—

*1. Արգէնտինայից (Ամերիկա) Գրիգոր Յարութիւնեանցը փոխադրել է 20 ֆ. ստերլինգ Թիֆլիսի Ամերիկայի կոնսուլին՝*

փոխ առել։ Արդէն Գրիգոր Նարեկացին ունի ձեւերի նրբութիւն։

Հայոց միջնադարեան երգը անչափ հարուստ է նոյնայանգութեամբ և նոյնաձայնութեամբ (аллитерція)։ Այս վերջինները տալիս են ոտանաւորին կատարելութիւն, որով ստացւում է հնչիւնական ձեւերի զուգորդութիւն և ոտանաւորի բովանդակութիւն, որ Հայոց բանաստեղծութեան բնորոշ կողմերն են։

Անտարակոյս Հայոց միջնադարեան բանաստեղծութիւնը հայ ժողովրդի դարաւոր և ոգեկան սաստիկ աշխատանքի պտուղն է, որ և ամենամեծ ապացոյցն է հայոց ստեղծագործ կարողութեան։

Սկայ

## ԹԵՐԹԵՐ ԻՄ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ

### III

### ԵՂԻՍԱԲԷԹ ՏԻՐՈՒՀԻ-ՄԱՅՐԸ

Թատրոնական փորձերը լինում էին Գէորգի բնակարանում, մեր տան դիմաց, Բագրատիոնովսկայա փողոցում, ծովագնաց Կորգանովի տանը... Ո՞վ կարող էր համարձակուել և դիմել տիրուհի մօրը՝ Եղիսաբէթին և առաջարկել, որ սա թոյլ տար իր դուստր Եֆրոսինէին, գնդապետ Մեհրաբեանի այրուն, բեմ դուրս գալ ու մասնակցել հայոց ներկայացմանը։ Այդպիսուն տիրուհի- մայրը այնպէս կը խայտառակէր, որ մկան ծակը շատ թանգ կառնէր թագնուելու համար... Բայց և այնպէս քանի որ գերասանուհիք գալիս էին տիրուհու տուն և խմում էին այնտեղ թէյ, հետեւաբար և տիրուհու աղջիկը և տ. Կէկել Փոլաջեանը (Աւետիք-Արասխանեանի զոքանչը), մայրս և տիրուհու ընտանիքին պատկանող ուրիշ կանայքը դուրս էին գալիս փորձի դահլիճը և ընտանեբար վարւում էին գերասանուհիների հետ, որոնց թւումն էր և օր. Գայիանէն (ռէալական դպրոցի աշակերտ Մեհրաբեան)։

Հասկանալի է, որ կանայք միմեանց հետ խօսում էին և վարւում այնպէս, ինչպէս սովորաբար կանայք վարւում են միմեանց հետ...

Գալիս էր նրանց մօտ և տիրուհի-մայրը...

— Հողեմ ձեր մայմուն գլուխը, ասում էր նա կամաց դերասանների և դերասանուհիների մասին...

— Տիրուհի, տատիկ. մի՞թէ Գէորգն էլ մայմուն է, ձեր Գէորգը...

— Է՜հ, որդի, խոցուած սիրտս մի քրքրի... իմ Գէորգը մեռաւ, մեռաւ այն օրը, երբ թողեց իր ծառայութիւնը և գերասան դարձաւ... մեծ մայմունը Գէորգն է...

— Տիրուհի տատիկ ջա՛ն, աւելի լաւ չէ՞ այժմ Գէորգը. մի օր աստիճանաւոր, մի օր սպայ, մի օր Մեծն Վարդան, մինչև անգամ թագաւոր...

— Ջէնդ կարէ, պատիժ-պատուհաս, չը լինի՞ թէ դու էլ ես ուզում մայմուն դառնաս... մօրդ ու հօրդ աչքի լոյսը կը լինես, արեգ վկայ...

### IV

### ՏԷՐ-ՏԷՐԻ ԱՋԸ ՎԿԱՅ

Որքան ես յիշում եմ, հայր-Զմշկեանը ունէր չորս արու զաւակ՝ Ալէքսանդր, Սարգիս, Գէորգ և Ստեփան և մի դուստր՝ Եֆրոսինէ։ Երեքից միայն Ստեփանն էր սակաւ ինչ շփւում թատրոնի հետ։ Ալէքսանդր Զմշկեանը, որ ամուսնացած էր գերմանուհու հետ, խելագարուեց և մեծ տանջանքներով վախճանուեց... Ստեփանը, որ հեռագրական ծառայող էր, նոյնպէս շուտ վախճանուեց։ Այդ երեքից աւելի երկարակեացը Սարգիս Զմշկեանն էր, որ իբրև երկրաչափ վերջերս Երևանի նահանգական դատարանի անդամ էր։ Գէորգից յետոյ աւելի մօտ ճանաչում էի Սարգսին, որովհետև տիրուհի-մայր Եղիսաբէթի Սարգսին ուղղուած բոլոր նամակները ես էի գրում։ Նամակ գրելը ինձ սովորեցրել էր Գէորգը և միշտ այսպէս էր սկսում. «Նախ և առաջ շատ սիրով հարց և բարև մատուցանեմք ձեզ և եթէ կը հարցնէք զմերս որպիսութեան, փառք Աստուծոյ, մենք ողջ և առողջ կամք... ձեր Կէկէլը աղջիկ ունի, շատ դժուար ծնեց... մամիկս Եաշգիւլի տղայ Մինասը նըշանուեց գրբացի աղջկայ վրայ... մեր գիժ Վանօն կտուրից ընկաւ ու աջու մաջէն դուրս գցեց։ Կուանենց Աննէն մաջէն տեղը գցեց ու զարար Գիքօն նրան հեքմահախ 10 գրուանքայ շաքար տուեց...հիմի թանկագին որթի ջան, փողս պրծաւ, խնդրեմ խարջլուղի փող ուղարկես...

Այս նամակների սկիզբը մինչև «ողջ և առողջ կամք» ես էի գրում, իսկ մնացածը թելադրում էր տիրուհի-մայրը...և նա թելադրում էր ամեն բան. և հաւերի, և բադերի, և հնդկահաւերի մասին, թուխսի հանուած ճուտերը և ամեն տեսակ մանրամասները։

1876 թուին ես Երևան ուսուցիչ էի. ես միշտ այցելում էի Սերգէյ Արտեմիչին, որ պահել էր մօր նամակները և կարդում էր իր ամուսնու ներկայութեամբ, ընտանեկան շրջանում. անչափ ծիծաղում էինք... Հանգուցեալ Սարգիսը ամեն մի նամակի պատասխան փող էր ուղարկում։ Այդ նամակների առանձին յատկանիշն այն էր, որ տիրուհի-մայրը նամակի մէջ գրածի իբրև ապացոյց անդադար կրկնում էր՝ «Տէրտէրիս աջը վկայ»։

### V

### ԲՆՈՒԹԵԱՆ ԳԱՂՏՆԻՔԸ

Ինչպէս յայտնի է, Գ. Զմշկեանն ամուսնացած էր իր վաղեմի ընկերուհի և աշխատակից տ. Սաթենիկի հետ (Եղիսաբէթ)... Ամուսինը և վերջինիս մայրը աշխատում էին շրջապատել Գէորգին ամենաքնքոյշ հոգատարութեամբ։ Գէորգը իր տնային պէտքերի համար շատ պահանջկոտ էր. թէ զոքանչը և թէ ամուսինը երկար տարիների ընթացքում ճանաչելով Գէորգին, իմանալով նրա բընաւորութիւնը, նրա սովորութիւնները, անչափ ջանք էին թափում գոհացում տալու այդ պահանջներին, Գէորգի քէֆը չխառնել։ Տ. Սաթենիկը մի վերին աստիճանի աշխատասէր և ընդունակ կին էր։ Նրան երբէք անգործ չէիք տեսնի. նա իր օջախում կարգադրում էր, տնտեսութիւն էր անում, դեր էր սովորում և եթէ պատահում էին ազատ րոպէներ, նա անպատճառ կամ կարում էր կամ գործում... Գէորգի զոքանչի եփած տոլման յայտնի էր Թիֆլիսի հայ բանգէտներին (ինտելիգենցիային) ու շատ անգամ Գէորգից իր զոքանչի եփած տոլմայով հիւրասիրուել են Գ. Սունդուկեանը, Աբգար Յովհաննիսեանը, Պերճ Պռօշեանը, Ղ. Աղայեանը, Գէորգ Եւանգուլեանը և ուրիշները։ Առհասարակ թէ Գէորգի և թէ իր ամուսնու յատկանիշներից մէկն էլ շատ լայն հիւրասիրութիւնն էր։

Ամուսինները մի քանի որդի ունեցան, որոնցից այժմ Վարդանն ու Հայկանոյշը Պետրոգրադումն են, իսկ Վիրգինիան Թիֆլիսում։ Սարգսի որդիքը՝ Յարութիւն և Եղիսաբէթ (Լիզիկ) մեծացան իրանց հօրեղբօր տանը։

Հօր հետ երկար տարիներ ընկերութիւն անելուց յետոյ՝ ինձ վիճակուեց ընկերակցել և Հայկանոյշին, երբ հայկական սեկցիայի սկզբնական ներկայացումները տրւում էին Թիֆլիսի ժողովարանում նախ շնորհալի իշխանուհի Մարիամ Թումանեանի ու ապա ընկերական վարչութեան ղեկավարութեամբ։

Մի տարի, երբ օր. Հայկանոյշը մեկնեց Թիֆլիսից, նրա առաջարկութեամբ մենք նամակագրութիւն սկսեցինք, որ ստացաւ մտերմական ու ազգակցական բնաւորութիւն։ Մտքերի փոխարինութիւնը լինում էր ընթացիկ հարցերի մասին։ Այժմ Հայկանոյշը Մոսկուայում մշակում է իր ձայնը և երգեցողութիւն է սովորում։

Ես վերևը յիշեցի, որ Գէորգը ունէր մի քոյր՝ Եֆրոսինէ անունով։ Գէորգի կրտսեր դուստր Վիրգինիան ինքը հօրաքոյրն է. երկու կաթիլ ջուր. մի շքեղ լուսանկար այնքան նման չեն միմեանց և իսկականին, որքան Վիրգինիան իր հօրաքրոջը։ Այս էլ բ ն ո ւ թ ե ա ն  գ ա ղ տ ն ի ք ն է։

Յ. Տէր-Գրիգորեան

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ԿԵԱՆՔԸ

Ոչինչ այնքան ուշագրաւ կրնայ ըլլալ ազգերու մրցման ասպարէզին մէջ, քան ազգերու յառաջադիմութեան և մրցակցութեան ասպարէզ տուող, ցեղերի կամ ազգերի պատկանելի զանգուածի գոյութիւնը, անոնց թուական առաւելութիւնը։

Բոլոր ազգերը հրապարակ իջած են գործելու, մրցելու, չափուելու, հաւատք ունենալով իրենց կռնակը պատնէշող միլիոնաւոր լեզէոններու վրայ, թէկուզ այդ միլիոնները լինին ամբոխային զանգուածներ, բայց պատնէշը անխորտակելի է և առաջապահները կը գործեն յանդուգն ու լարուած և խոյընդոտ ցուցնող ոսէ մրցակցին կը ցուցնեն կռնակը ամրացնող միլիոններու անխորտակելի կուրծքերը։ Այս զարհուրելի օրերին, համեւրոպական այս եղեռնի հանդէպ ընկճուած չեն այն ազգերը միայն, որ շատ ունին այդ միլիոններէն և որքան էլ շատ կոտորուին անոնցմէ, դեռ ունին մարդիկ, ունին միլիոններ իրենց դրօշն պարզելու։ Գերմանիոյ գլուխը Վիլհելմ կնքահայր է մօր մը եօթներորդ զաւկին, նա իր կայսերական բարձրութիւնը կը նուիրաբերէ միլիոններ կազմող այդ եռանդուն արտադրող մայրերուն, միլիոններ ունենալու և անոնցմով կռուելու իր աշխարհատարած ծրագրերը, երկրակուլ քաղաքականութիւնը և գերիշխելու իրաւունքը։

Տխուր է քրքրել Տաճկահայաստանի թատերաբեմի անողոք իրականութիւնը, ծանր է յիշել յաճախ և պատկերացնել դահիճ կառավարութեան եղեռն, մանրամասնել նկարագրութիւնը այդ դժոխքին, ուր անհետացաւ ազգ մը այնքան կանոնաւոր, այնքան անխռով և այնքան աննշմարելի։

Այսպէս թիւրքական դժողքը կլլեց մեր միլիոններէն հարիւր հազարաւորներ, առանց սեռի և հասակի խտրութեան, առանց դասակարգի տարբերութեան։ Անհետացան անոնք, երբ շատ մօտ կըզգային ինքզինքնին արևի ծագման...

Իսկ անոնցմէ չնչին մաս մը միայն կուրծք տալով դժողքի այդ արհաւիրքներին, պատռեց զազանի կուրծքը ու անցաւ սահման, մտաւ Կովկաս, սպասելու քաղաքական հորիզոնի պարզուելուն, կրկին վերադառնալու միակ յոյսը սրտին մէջ։

Եւ փախստականներու այդ մեծ զանգուածը տարածուեցաւ Կովկասի զանազան կողմեր, ապրելու ձմեռը, սպասելու գարնան բացուելուն։

Բայց Հայաստանի Կովկասին տուած այդ աւանդը, նրա միակ յոյսը կազմող այդ կիսակենդան, ողորմելի զանգուածը չունեցաւ իր մխիթարական ապահով դրութիւնը...,

Տխուր է պատկերը և առնուած տեղեկութիւնները խիստ խռովեցնող։

Երբ մենք կապրինք գաղթականներու փոքր, շատ չնչին զանգուածի մը մէջ, Թիֆլիս մօտ 2,500 տուն փախստականներով շրջապատուած, երբ կը տեսնենք եղած մասնաւոր ջանքեր ու աշխատութիւններ, ակամայից անտեղեակ դուրսի կեանքին, մեծ զանգուածներու կրկին լքուած և երեսի վրայ թողնուած դըրութեան, կզգաս որ պահ մը պիտի ապրի գաղթականութիւնը։

Բայց ո՛չ ահա մեր փախստական ընկերներու և տեղացի անաչառ թղթակիցներու մասնաւոր և հրապարակային փաստաթղթերը, որք իրարու ետևէն կը գուժեն, անհոգութեան դատապարտուած, անօթութեան և կրկին կատաղութեամբ մօտեցող մահուան ճիրաններով շրջապատուած, դեռ երէկ մազապուրծ ազատուած մեր փախստականներու կեանքը։

Կը գրեն մեր ընկերները. «Գ. փախստական ընկերներ՝ Թիֆլիս անուշ է անշուշտ, տաք տեղ և թերևս տաք և կուշտ Ձեր քով գտնուած փախստականները. բայց թէ որ մենք գրեցինք մեր հայրենակիցներու կեանքի մասին, գրեցինք, որ անօթի են, մերկ են, հիւանդ են, կը մեռնին, օգնութիւն չըկայ, մարդիկ չեն հետաքրքրուիր, նոյն իսկ կը կշտամբեն, կը ծաղրեն անոնց դըժբախտութիւնը, ո՛վ Ձեզ տուաւ իրաւունք Թիֆլիս նստել և լռել։ Չէ, սիրտ չի դիմանար Ա.-ն ջան, չըարկանաս, գրեցէք թերթերու մէջ, դիմեցէք, խնդրեցէք, ինչո՞ւ լռած էք»։

Ուրիշ մը կը գրէ.

«Ընկեր Ա..., Ես դեռ Թիֆլիս քեզ չըսի՞, անօգուտ է, կը մեռնին, չեն ապրիր. թողունք ապրելակերպի տարբերութիւնը, նըպաստ չեն տար, մերկ են շատերը անատան տօղմայ, ձըմեռը սկսած է, ցուրտ է, շատերը դեռ բաց երկնքի տակ կը պառկին, հիւանդութիւնները սկսած է, տիֆ աւերներ կը գործէ, ես անզօր եմ բան մը ընել, դուք ի՞նչ կընէք, ես իմ Աստուած, մեղք է... աշխատեցէք...»։

Ասոնցմէ զատ յաճախ մեր օրաթերթերու մէջ կը կարդանք աւելի խիստ նկարագրութիւններ խուլ անկիւններէն եկած։

Ալ սպասել և թողուլ որ մարդիկ կոտորուին անխնայ, երբ մի քիչ աւելի լարուածութիւն և շրջահայեաց աշխատութիւն, գործի լաւ կազմակերպութիւն վերջ կը դնեն այս բոլոր աղէտալի չարիքներին, երբ մանաւանդ գործը այլևս համազգային օգնութեան և գործակցութեան նիւթ դարձած է։

Մինթէ մարդկային գիտակցութիւնը և մարդասիրութիւնը կրնայ կանգ առնել, երբ այդ գիտակցութեան և մարդասիրութեան լուրջ գործակցութիւնէն կախուած է, ոչ միայն փախստական 100,000ի մը կեանքն ու ապագայ յոյսը, այլ և ամբողջ հայ ազգի մը միակ երազը... մօտալուտ իրականութիւնը այնքան երազուած, ծրագրուած և զոհաբերուած պաշտամունքներին...։

Որի՞ համար պիտի կառուցանել Հայաստանի աւերակները, ո՞վ պիտի կառուցանէ 100 հազարաւոր այրիների ու որբերի աւերակ գիւղերն ու աւանները, թողնուած անտէր ու մոխրացած։

Ո՞վ պիտի վերադառնայ հայրենիք, շինելու քայքայուած օճախները. ո՞վ պիտի կանգնէ հին պատմական կոթողները մեր սրբազան ուխտատեղիների, ո՞վ պիտի լծէ եզը և կանչէ հոռովէլը վարելու լքուած՝ բայց հարազատներու արիւնով և դիակներով պարարտացած հողը, ո՞վ պիտի վերադարձնի Հայաստանի փշրուած կուլտուրան, ո՞վ պիտի տանէ խաչն ու բուրուառը օրհնելու և խնկելու պղծուած մեր հարազատներու և հերոսներու գերեզմանները, ո՞վ պիտի կանգնէ մեր ազգային վիրաւորուած պատիւը և վերջապէս, ասացէք, երբ այս բոլորը չարունակուին, ո՞վ պիտի վերադառնայ...։

Այլ մենք չենք ունենար իրաւունք պահանջելու արդարութեան սեղանէն, հազարաւոր զոհերու արիւնով մկրտուած Ազգային հարցի լուծումը, երբ իրարու ետևէն կը մեռնին, կեանքի ծանր բեռին տակ կքած, երբ մարդ չը մնայ այդ զոհուածներու բանակէն։

Այն մեռնող ժողովուրդն է միայն քո կռուանը, հա՛յ ժողովուրդ, քո բոլոր յոյսը, տառապողներու այդ զանգուածներէն. որք այսօր սահմանը անցած եկած են ու չոքած ձեր դռները, ապրելու յոյս մը սրտերուն և օրհնութեան խօսքը շրթունքներուն։

Պահէ այդ աւանդը...,

Էն-Սար

---

## ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԾԱԳՄԱՆ, ԱՐԴԻ ԿԱՑՈՒԹԵԱՆ, Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԵՒ ՆՐԱՆ ԿԻՑ ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ*)

### IV

Ինչպէս շեշտել էի նախընթաց յօդուածում, փախստականների անմխիթար կացութեան պատճառներից մէկն էլ եղել է օգնութեան գործի անախտեմ կազմակերպութիւնը։

Թէպէտ փախստականների վիճակով զբաղուել են շատ հասարակական և այլ հիմնարկութիւններ, բայց նոցանից ոչ մէկն էլ, մինչև օրս, չի կարողացել օգնութեան գործը այնպէս կազմակեր-

*) Տես «Համբաւաբեր» № 2, 3 և 4։

պել, որ թշուառները կարողանան պահպանել իրենց գոյութիւնը ամենահամեստ սահմաններում։

Օգնութիւն հասցնում են, բայց մինչև օրս էլ կիսատ պռատ, ուստի և դեռ շարունակւում է կիսաքաղց դրութիւնը, ցուրտ և տարափոխիկ հիւանդութիւնները տանում են բաւական զոհեր։ Սկզբներում, երբ օգնութեան գործը ամբողջովին ծանրացած էր գիւղացութեան և հասարակական հաստատութիւնների վրայ, փախստականների կացութիւնը ներկայիս նման ունէր իր արդարացուցիչ հիմքերը, այն է՝ միջոցների սղութիւնը։ Տակաւին շատ վաղ սկզբներում շեշտւում էր, որ փախստականների օգնութիւնը պետական գործ է, որը պահանջում է խոշոր միջոցներ, որ Կովկասի գիւղացութիւնը այլևս անկարող է օգնել, որովհետև ինքը միանգամայն քայքայուել է տնտեսապէս և կարօտ է օգնութեան։

Այս առարկութիւններն անհետևանք չանցան։ Պետութիւնը վերջապէս, որոշ չափով, սեպտեմբերին հասաւ օգնութեան, տալով մարդագլուխ նախ 10-ական, ապա 15-ական կոպէկ։

Այդ օգնութիւնն էլ առանձին զգալի թեթևութիւն չպատճառեց փախստականներին և վերջ չդրեց նոցա ոչ անհիմն տրտունջներին, ոչ ծանր կացութեան։

Որպէսզի փախստականները տանելի վիճակ ունենային և վերջ տրուէր նոցա միանգամայն արդարացի բողոքներին, անհրաժեշտ է՝

1. Տարափոխիկ և այլ հիւանդութիւնների առաջն առնելու համար բացի հիւանդանոցների թիւը շատացնելուց, հարկաւոր է շրջանային շրջիկ բժիշկներ և ֆելդշերներ, որոնք կարողանային հիւանդութիւնը բնումը խեղդել և մինչև դանակը ոսկորին հասնելը բժշկական օգնութիւն հասցնել։

2. Կարևոր են ծանր հիւանդներին հիւանդանոց փոխադրելու միջոցներ, օրինակ պատգարակներ (նոսիլկա)։

3. Ցրտից ազատելու համար անհրաժեշտ է ամեն մի ընտանիքին, ամբողջ ձմեռուայ համար տալ 40—50 ռ. այն հաշուով, որ նա կարողանար $1^{1}/_{2}$ սաժ. ցախ կամ 1 սաժ. փայտ գնել։

4. Անհրաժեշտ ամանների համար (խմորի տաշտ, թէյաման, (չայնիկ), բաժակ և այլն) տալ ամեն մի ընտանիքին 5 ր.։

5. Անկողինի, շորի, կօշիկի համար յատկացնել մարդագլուխ 15—20 ռ.*)

6. Բնակարանի համար պէտք է տալ անձին 75 կոպ. —2 ր. ի նկատի ունենալով վայրը և ընտանիքի անդամների թիւը. եթէ ընտանիքի անդամների թիւը քիչ է, պէտք է տալ շատ։

7. Բաժնեմասը (պայոկ) աւելացնել, որ նա ձեռք բերի ալիւր, շաքար, թէյ, աղ, սապոն և այլ անհրաժեշտ մթերքներ։

Բանալ որոշ կեդրոնական վայրերում անհրաժեշտ մթերքների սպառողական շտեմարաններ և ունենալ ապրանքներ փոխադրելու համար մի քանի հատ բեռնակիր ինքնաշարժ կառքեր (աւտոմոբիլներ)։

Մենք տուինք մի համառօտ նախագիծ՝ ինչպէս կազմակերպել փախստականների օգնութեան գործը, որպէս զի փոքր ի շատէ բարելաւուի նոցա վիճակը։ Ծրագիր մշակելու և անմիջապէս գործի անցնելու համար անհրաժեշտ է հրաւիրել փախստականների օգնութեամբ զբաղուող բոլոր հաստատութիւնների ներկայացուցիչների համագումար, ամենակարճ ժամանակամիջոցում։

Թող համագումարի հրաւիրելու նախաձեռնարկը իր վրայ առնի հաստատութիւններից որևէ մէկը։

Պէտք է շտապել, եթէ ցանկանում ենք, որ մեր խղճի վրայ չծանրանան նոր հազարաւոր զոհեր։

Դանդաղկոտութիւնը յանցանք է։

Ա. Շարաֆեան

*) Դուրս գալով ընդհանուր գումարից վերջերս բաժանած շորերի և անկողնի վճարը։

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

«Սալմաստի եղբայրական օգնութեան կոմիտէն», որ սկզբում գործում էր Հին-Նախիջևանում «Շարուր Դարալագեազ Կոմիտէ» անուամբ, 1914-ի դեկտեմբերի 23-ից մինչև 1915-ի դեկտեմբերի 31-ը թէ Հին- Նախիջևանում և թէ Սալմաստում մուտք է ունեցել 292,413 ռ. 14 կ., իսկ ելք՝ 268,241 ռ. 82 կ։

Ընդհանուր հաշուով Սալմաստում եղել է 20,000 հայ, որից 12,000-ը գաղթական, Խոյում 2000, իսկ Ուրմիայում 4500։ Մեռել է հիւանդութիւնից յուլիսի 1-ից 31 դեկ. 1000 հոգու չափ։ Նպաստ ստացել են Մակւում, Խոյում, Սալմաստում, Ազրակում (Բաշկալէ), Ուրմիայում և Թաւրիզի շրջանում (Մարաղա և Սովուջբուլաղ)։ Ասորի գաղթական եղել է 30,000-ի չափ Սալմաստ, Ուրմի, Խոյ, որոնցից նպաստ ստացել են մեր Կոմիտէից նրանք, որոնք խառն ապրելիս են եղել հայերի հետ։

Բժշկական օգնութիւն սկզբից մինչև վերջ հասցրել է Բագուի հայկական բիւրոյի միջոցներով Կուլտուրական Միութեան կողմից ուղարկուած բժիշկ Արամ Աւետիսեանը։ Հոկտեմբեր ամսին միացել է Քաղաքների Միութեան կողմից բժ. Վ. Յովհաննէսեանը իր խմբով և հիւանդանոցով։

Նոյեմբերին միացել է սոցա հետ Տատիանա Նիկոլաեւնայի Կոմիտէի Պետր. Հայոց ընկերութեան լիազօր Ս. Տիգրանեանի բժշկական սննդատու խումբը։

Այս յանձնաժողովի նախագահն է Ներսէս եպ. Մելիք Թանգեանը, յայտնի իւր եռանդուն անխոնջ և մաքուր գործունէութեամբ, որից կարող էին օրինակ առնել իւր Ս. Էջմիածնի օծակից Բագրատ եպիսկոպոսը։ Նախագահը այդքան դրամ, ապա և շոր ուղարկող բոլոր անձանց և հաստատութեանց ուղարկել է վաւերագրերը իւր արած ծախքերի։

## ՀԵՌԱԳԻՐ

Փետրուարի 5-ին Թիֆլիսի առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը Խնուսից ստացել է հետևեալ հեռագիրը. «Խնուսում արդէն հաւաքուել են 1000 հոգի փախստականներ։ Յունուարի 29-ին սայլերով գրանցից ուղարկեցինք Կովկասի սահմանները։ Նոր գրաւած երկրի վայրերից օրէցօր աւելանում է փախստականների թիւը. գլխաւորապէս կանայք և որբեր են։ Հաւանական է, որ կենդանի մնացածների թիւը մեծ է։ Մեծ պահանջ կայ տաք շորերի։ Մենք առաջ ենք ընթանում շտապեցէք ուղարկել լիազօրներ կարօտեալների համար հոգալու։ Հայկական երկրորդ խմբի ներկայացուցիչ Բէնօ»։

## ԳԱՒԱՌ

ԱԽԱԼՑԽԱ.—Այս ձմեռ մեզանում, մինչև դեկտեմբերի վերջը, բաւականին տաք ու չորային անցաւ, համարեա ձիւն չէր եկել. սակայն յունուարի սկիզբներից սկսեց յաճախ ձիւն գալ և եղանակները զգալի կերպով ցրտել։

— Քաղաքումս որոշ չափով տարածուած է երեխաների մէջ կարմրուկ հիւանդութիւնը։

— Ախալցխայում էլ կենսական մթերքների չը տեսնուած թանգութիւն է։ Օրինակ ձուն հատը 4 կոպէկով է ծախւում, իւղի ֆունտը 70—75 կոպէկ, պանիրը՝ 35—40 կոպ., միսը՝ 20—25 կ. այն էլ չէ ճարւում, նոյնպէս գետնախնձորը, մրգերը, վառելափայտը և այլն, որոնք տեղական արդիւնքներից են՝ եռակի, քառակի գներով են ծախւում։

—Քաղաքումս կեանքը շատ անգոյն ու թմրած է անցնում, ա-

առաջդիմութեան ոչ մի նշաններ չեն երեւում, անտարբերութիւնը, անհոգութիւնը թագաւորում է ամենուրեք. չունենք երիտասարդութիւն, գործող տարր, ինտելիգենցիա բառի բուն նշանակութեամբ։ Թէեւ ունենք քաղ. ինքնավարութիւն, կազմ. ընդարձակ ուսուցչական խումբ, հասարակական մի քանի հաստատութիւններ ու ընկերութիւններ, սակայն նրանց գործունէութիւնը այնքան անգոյն ու աննշան է անցնում, որ ոչնչով նշմարելի չեն լինում։ Օրինակ՝ ունենք ընկերութիւններ, որոնք այսպիսի կրիտիկական րոպէներին փոխանակ աւելի եռանդուն գործեր անելու, անհոգութեան են մատնուել և, ինչպէս տեղեկանում ենք, ամիսներով նիստեր չեն ունենում։ «Անունը կայ, ամանումը չկայ...»։ Միակ կազմակերպութիւնը, որ առայժմ բաւականին դէպի իրան է գրաւել հասարակութեան ուշադրութիւնը, դա քաղաքիս նոր կազմակերպած «Կոոպերատիւ ընկերութիւնն է», որը առայժմ բաւականին եռանդուն գործում է։ Արդէն բաց է արել հացթուխարան և ուրիշ առեւտրախանութ՝ հասարակութեանը լաւ թխած հաց և մթերք մատակարարելու։ Ցանկանք որ այդ եռանդը ժամանակաւոր չը լինի և միւսների նման վերջը իրան անհոգութեան ու անգործունէութեան չը մատնէ։

— Քաղաքիս աւագի օգնական՝ Յար. Ղազարեանը ահա մի քանի ամիս է, որ հրաժարուել է իւր պաշտօնից, մեզ անհասկանալի պատճառով։ Այդ հրաժարականի մասին ժողովրդեան մէջ զանազան առէկօսէներ և կարծիքներ են շրջում...։ Նրան փոխարինելու համար առայժմ թեկնածուներ չկան։ Մասամբ խօսւում է Յովհ. Զաթալբաշեանի մասին, որին, ինչպէս լսում ենք, որոշ շրջանի մէջ ցանկութիւն կայ ընտրել, եթէ նա ցանկանայ։ Պարոն Զաթալբաշեան իւր պատրաստականութեամբ և արժանաւորութեամբ շատ յարմար թեկնածու է հանդիսանում այդ պաշտօնի համար։

—Յունուարի 24-ին քաղաքումս մեծ շուքով հողին յանձնեցին տեղացի պրապորշչիկ Սուրէն Անիսոնեանի դիակը, որը սպանուել էր պատերազմի դաշտում, Աւստրիական սահմանագլխում։

Թ.

ԲԱՐՎԱՆՍԱՐԱՅ (Ղազախի գաւառ).—Ամերիկացի պաստոր Մակալլումը և պ. Հիլլը արդէն գտնւում են մեր գաւառում, շրջում են գիւղերը, անձամբ ծանօթանում փախստականների դրութեան հետ, բաժանում են նրանց շորեր, թէյ, շաքար, ստանում են նաւթի Բագուից, որ նաւթ էլ բաժանեն փախստականներին։ Մեր գիւղումը պաստոր Մակկալումը մնաց երեք օր և երբ նա տեղն ու տեղը՝ թէ Բարվանսարայում և թէ միւս գիւղերում ծանօթացաւ, թէ ինչպէս է կազմակերպել փախստականների օգնութեան գործը Կովկասի Հայոց Բարեգ. Ընկերութիւնը, որի կողմից Ղազախի գաւառում գործում են նրա երկու ճիւղերը՝ Բարվանսարայի և Դիլիջանի, հրապարակաւ ասաց. «Ես չէի սպասել, որ այսչափ հիանալի կազմակերպուած լինէր այստեղ փախստականների հոգատարութիւնը, մանաւանդ շորերի բաժանումն. շատ ուրախ եմ, որ դուք ձեր գեղեցիկ կազմակերպութեամբ շատ թեթեւացրիք մեր աշխատանքը»։ Երբ Մակալլումը պատրաստւում էր ուղեւորուել Դիլիջան —տեղական ժողովուրդի ներկայացուցիչներ և ահագին բազմութիւն փախստականների ժողովուեցին յայտնելու իրենց երախտագիտութեան զգացմունքները ու շնորհակալութիւնները մարդասէր Ամերիկային և նրա ազնիւ ներկայացուցիչներին, որ եկել են օգնութեան ձեռք կարկառելու։ Այս ցոյցը շատ խոր տպաւորութիւն արաւ ծերունի Մակալլումի վրայ և այդ տպաւորութեան տակ, ուղեկցութեամբ Տէր-Մեսրոպ Էգիլեանի, հեռացաւ զգացուած։ Նա և ընկերները Դիլիջանի օգնութեան գործը վերջացնելուց յետոյ, պէտք է անցնեն Բայազէտի գաւառը և ապա Ղարաքլիսի շրջանը։

Այս քանի օրերս կը բացուի Բարվանսարայում ապաստարան որբ-փախստական երեխաների 70 հոգու համար։ Ապաստարանի համար պատրաստուած են երկու բնակարան—մէկը Բարեգործական Ընկերութեան սեփական տունն է, իսկ միւսը նրա հարեւան վարձովի տունը։

ԱՐԴԱՀԱՆ.—Արդահանում և Ուսուտում գտնւում են 933 գաղթական, որոնք գաղթել են Օքրոպակերտից և Սաթլէլից։ Կառավարութեան, ինչպէս և Ղարսի Կ. Հ. Բ. Ը-եան ճիւղի արած օգնութիւնը չի բաւականացնում, երեխաները մերկ են և բոբիկ։ Օր ըստ օրէ աճում է հիւանդների թիւը։ Զը կայ բժիշկ, դեղօրայք, զգացւում է տաք շորի և ալիւրի պակասութիւն. անհրաժեշտ է օժանդակութիւն։

ՈՒՇՏԱԼ (Գէօկչայի գաւառ).—Մեր գաւառի շատ գիւղերում երիտասարդութիւն չէ մնացել։ Երիտասարդները գնացել են պատերազմ. գիւղերում մնացել են մասամբ ծերունիներ և երեխաներ։

Աշխատող ձեռքերի մեծ պակասութիւն է զգացւում։

Երկու տարի է բերք չի լինում. խաղողի վազները շատ տեղեր փչացել են ցրտից, իսկ ցանքսերը վնասւում են մկներից։ Գիւղացիք անզօր են կռուելու մկների դէմ, որովհետեւ միջոցներ չըգիտեն, իսկ դրսից էլ օգնող չկայ խեղճ ու տգէտ ժողովրդին։ Հացի պակասութիւն արտասովոր է, կատարեալ սով է գիւղերում։

Մեր գիւղում կայ ուսումնարան, կան գրագէտներ, բայց սըրտի ցաւօք պէտք է ասենք, որ մեզանում ոչ գրադարան կայ, ոչ էլ լրագիր է ստացւում, որ գրագէտները պարապեն ընթերցանութեամբ ու աշխարհիս լաւն ու վատը իմանան։ Ցանկալի է, որ գիւղացութիւնը այդ պակասի վրայ էլ ուշադրութիւն դարձնէր։

Ով նուիրէր մեզ գրքեր, մանաւանդ լրագիր, բարի գործ կատարած կը լինէր։

Գիւղացի Մ. Առուշանեանց

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Փախստականների օգտին Լոնդոնի Անգլիական կոմիտէն նորից փոխադրել է Հ. Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեանցի անունով 64,000 ռ., որ առաջ ստացածների հետ կանի 181,000 ռ.

***

Նուէր փախստական երեխաների օգտին. Ներքին գործոց Նախարարութեան կից առանձին խորհրդակցութիւնից Հ. Կ. Կոմիտէն ստացել է Պետրոգրադի Հ. Կոմիտէի միջոցով 23,500 ռ.

***

Հ. Կ. Կոմիտէի փետրուարի 4-ի նիստի որոշումներից. Փոխադրել Արդահանի Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղին 300 ռ. և դեղօրայք գաղթականների համար։ Գանձակի Բ. որբանոցի համար 1000 ռ. և Բարվանսարայի նոր բացուած որբանոցին 1000 ռ.։

***

Հ. Կ. Կոմիտէն բացել է որբանոցներ Բաշ գիւղում և Բարվանսարայում։

Գանձակի բ. որբանոցին ուղարկել է 600 ռ., իսկ Յամարաբերդի փախստական երեխաների համար միանուագ 100 ռ.։

Ստացել է Փոխարքայի դիւանատնից 600 ռ. գաղթականների կարգաւորման համար։

***

Հայկական կենտրոնական կոմիտէն ստացել է Թէոդոսիայի Հայկ. Կոմիտէից 500 ռ., 300 ռ. յատկացուած է նուիրատուների կամքով փախստականների պէտքերի համար, իսկ 200 ռ. որբանոցների համար՝ գլխաւորապէս Ծիրանաւորի որբանոցի։

***

Թիֆլիս.

Հայկ. կենդր. կոմիտէն ստացել է տիկ. Նադէժդա Մնացականեան Խիթարեանից յօգուտ փախստականների 243 ռ. 60 կ.։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը ստացել է 12 և 13 տարեկան աշակերտներ՝ Լևոն և Հայկ Արապեաններից մանկական պրոժեկտորից գոյացած արդիւնք յօգուտ փախստականների 8 ռ. 20 կ.։

***

Սոչի.

Սոչիի հայ կանանց և օրիորդաց մասնախումբը ամսավճարներից գոյացած գումարով գնել է և կարել տուել 65 կտոր նոր և 10 կտոր հին զգեստ փախստականների համար և ուղարկել Կ. Հ. Բ. Ընկերութեանը կարօտաւոր փախստականներին բաժանելու։

***

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը, պ. Մելիք-Կարապետեանի կազմած «Մարդակազմութեան» ալբոմից 10 օրինակ գնեց և ուղարկեց Նուէր Բարեգ. Ընկերութիւնից նպաստ ստացող երկդասեան դպրոցներին։

***

ՃԻՒՂԵՐ

Բաշ-Գիւղի ճիւղի վարչութիւնը «Համբաւաբեր»ի ֆոնդին յատկացրել է միանուագ 30 ռ.

Ստացել է՝

—Գիւլաթափից (ռուս. Բասէն) Երեմիա Պապիկեանի հարսանիքին հաւաքուած Վաղարշակ Մախաթճեանի միջոցով մի խումբ քրդերից 9 ռ., գրագիր Անաստաս Դիմեսովից 5 ռ., հայ գիւղացիներից 16 ռ. հայ փախստականների համար, որ յանձնուեց Կ. Հ. Բ. Ը-թեան պ. Շաւարշ Բասենցեանի ձեռքով։

***

Սուրմալու գաւառի Ալղումար գիւղից Ս. Սահիփանեանը գրում է. Յունուարի 8-ին տեղի ունեցաւ ընդհանուր ժողով և նոր վարչութեան և վերստուգիչ մասնաժողովի անդամներ վերընտրուեցան աննշան փոփոխութեամբ։

Նախկին վարչութիւնը իր ունեցած շատ սուղ միջոցները անցեալ օգոստոս և սեպտեմբեր ամիսներում ծախսած լինելով տեղիս գաղթականների վրայ, ստիպուած փակել էր գրադարան-ընթերցարանը, որ և պատճառ դարձաւ անդամներից շատերի հեռանալուն։ Բայց նոր վարչութիւնը առայժմ կարողացել է 5-6 ամսով գրադարանի ծախսը ապահովել։

Մեծ ուրախութեամբ ստացուեցին «Համբաւաբեր»ի առաջին թուերը։ Ընդհանուր ժողովը յանձնարարեց վարչութեանը՝ ողջունել Խորհրդին մեր սեպհական թերթի հրատարակութիւնը, յոյս յայտնելով, որ մինչև վերջն էլ Համբաւաբերը կը մնայ անկուսակցական և խակական ժողովրդական, որպիսին փայլել է մի մեծ և տարածուած ընկերութեան։

***

Կախ-Աւան։

Զաքաթալայի շրջանի Կախ-Աւանի Մելքիսեդեկ քահ. Ալղըբեանի նախաձեռնութեամբ բացւում է այնտեղ Կովկասի Հայոց Բարեգ. Ընկերութեան ճիւղ։

***

Վելիսցիխէ։

Կ. Հ. Բ. Ընկ. Վելիսցիխէի տեղական ճիւղի ընդհանուր ժողովում վարչութեան անդամներ ընտրուել են.—նախագահ՝ Սիմէոն քահ. Տէր-Ղազարեան, փոխ-նախագահ՝ Իւան էգ. Օհանեան, գանձապահ՝ Ալէքսանդր Գոգալեան և քարտուղար՝ Վաղարշակ Պետրոսեան։

***

Կուտայիս։

Կ. Հ. Բ. Ընկ. Կուտայիսի տեղական ճիւղի վարչութեան անդամներ ընտրուել են. նախագահ՝ Արգար քահ. Տէր-Յովհաննիսեան, փոխ նախ.՝ Յովհաննէս Յովսէփեան և անդամներ՝ Եղիշէ քահ. Տէր-Եղիազարեանց և Մովսէս Պառաշեանց։ Նոյն ճիւղը որոշել է անդամակցական վճարների փոխարէն ընդունել հասարակութիւնից մի չանմարան ցորեն 800 ռուբլի արժողութեամբ։

---

ՆՇԱՆԱՒՈՐ ԿՏԱԿ

Յունուարի 28-ին Թիֆլիսում վախճանուեց խոշոր դրամատէր Աղէքսանդր Գէորգեան Այվազեանը։ Ըստ կտակի իւր բոլոր շարժական և անշարժ կարողութիւնը, մօտ 700000 ռ. թողնուած է Թիֆլիս քաղաքին։

Այդ բոլոր կարողութիւնը հանգուցեալը կտակել է միջին և բարձր կրթական հաստատութիւնների Թիֆլիս քաղաքի հայ ուսանողներին թոշակներ տալու, առանց հպատակութեան տարբերութեան։ Իւրաքանչիւր թոշակը որոշուած է տարեկան 450 ռ., սակայն քաղաքային վարչութեանը իրաւունք է տուել հասցնելու մինչև 600 ռ.։ Թոշակների 1/4 մասը նշանակուած է աղջիկների՝ իսկ 3/4-ը տղաների համար, որոնց թիւը կը հասնի 40—50 հոգու։ Ամենայն Հայոց Կաթողիկոսին տուած է հսկողութեան իրաւունք, որ կտակը կատարուի ճշտութեամբ։

Փետրուարի 1-ին քաղաքագլուխ պ. Ա. Խատիսեանը զեկուցեց դումային հանգուցեալ Ա. Այվազեանի կտակի մասին։ Դումայի իրաւասուների մէջ ծագեց տարաձայնութիւն կտակի ընդունելութեան առթիւ։ Իրաւասու Գոտուան նկատեց, որ կտակը ըստ իր բովանդակութեան և նպատակների պէտք է յանձնուէր Ամենայն Հայոց կաթողիկոսին կամ Հայոց Բարեգործական ընկերութեան, քանի որ կտակողը իր կարողութիւնը նուիրել է միմիայն մի ազգի—հայերի երիտասարդութեան կրթութեան, իսկ քաղաքային ինքնավարութիւնը ազգային հիմնարկութիւն չէ։

Հարցի քննութիւնը քաղաքագլուխը փակեց։

---

Ամերիկական կոմիտէի ներկայացուցիչը փոխադրել Հայ Կանանց կոմիտէին 8000 ռուբլի փախստականների համար տաք շորեր և վերմակներ պատրաստելու նպատակով։

---

Թիֆլիսի թեմի առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը Թիֆլիսի ամերիկական դեսպանի միջոցով ստացաւ Ամերիկայի հայկական կոմիտէից 5000 ռ. որբ փախստականների կարիքների համար։ Մեսրոպ եպիսկոպոսը այդ գումարով մտադիր է մօտ ապագայում Թիֆլիսում բանալ փախստականների համար նոր որբանոց։

---

Եղբայրական Օգնութեան տուեալների համաձայն սոյն տարուայ յունուարի 1-ին Երևանում ցուցակագրուած է 18,462 փախստական։

---

# Գիտական

## ՀԱՆԳ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ *)

Ի՞նչ է հանգուցեալի ծառայութիւնը գիտութեան։ Նախ՝ նա իր մատենագիտութեան պատճառով երևան է բերել և հրատարակել շատ բնագիրներ, որոնք կարևոր են ընդհանուր և հայոց եկեղեցու պատմութեան համար. և ապա՝ նա որոշ չափով լուսաբանել է հայոց եկեղեցու պատմութեան այս կամ այն կէտերը։ Նոյն իսկ եթէ չլինէր նրա աշխատանքի այս երկրորդ մասը, առաջին մասը միայն բաւական կըլինէր, որ նա գիտութեանը ծառայութիւն արած լինէր։ Տեսնենք նրա գործի այս կողմը՝ միայն «Կնիք հաւատոյ» ձեռագրի հրատարակութեան վրայ։

Դա մի մեծ գիրք է մեծադիր երեսներով, № 10 տառով տպուած, 10 եր. նախաբան, 109 եր. ներածութիւն, 372 եր.

*) Տես «Համբաւաբեր» № 6։

մէջ, երբ դրա համար նորանոր աղբիւրներ ու նիւթեր էր որոնում ու պարզաբանում։

Բայց առանց այդ էլ մեր եկեղեցական պատմութիւնը շատ բան է պարտական նրան։ Այսուհետև կարելի չէ այդ պատմութիւնը գրել՝ առանց նկատի ունենալու նրա բազմաթիւ մանր ու մեծ ուսումնասիրութիւնները, եզրակացութիւններն ու դիտողութիւնները պատմական զանազան խնդիրների, դէպքերի, թուականների, անձերի մասին։

Յաւերժ յիշատակ հայ գիտուն հետազօտողին և անձնդիր վարդապետին։

Ցանկանք միայն, որ նրա բազմաթիւ աշակերտներն ու յարգողները կարողանան գլուխ բերել նրա անտիպ աշխատանքների տպագրութիւնը։

Մ. Աբեղեան

# Քրոնիկոն

Նորին Կայս. Բարձրութիւն Կովկասի Փոխարքան բարեհաճել է թոյլատրել այժմ Թիֆլիսում գտնուող և պետական օգնութեան կարօտ փախստականներին մնալ Թիֆլիսում մինչև այս տարուայ ապրիլի 1-ը։

***

Փետրուարի 3-ին, Էրզրումի գրաւման ուրախալի լուրը կայծակի արագութեամբ տարածուեց Թիֆլիսում. ցերեկուայ ժամը մօտ 3-ին քաղաքը զարդարուեց դրօշակներով և ազգաբնակչութիւնը լցուեց փողոցները։

Զինուորական և Սիօնի տաճարներում տեղի ունեցան մաղթանքներ, որոնց ներկայ էր Կովկասի Օգոստափառ Փոխարքան։ Երեկոյեան ժամը 6-ից սկսած բազմութիւնը սկսեց հետզհետէ խռնուել Փոխարքայի պալատի առաջ։ Թիֆլիսի արական գիմնազիաների աշակերտները իրենց երաժշտական խմբերով և գոյնզգոյն լապտերներով կանգնած պալատի առաջ նուագում և երգում էին. այդ ուրախ ցոյցին մասնակցում էին Կրծանիսի բոլոր հայ որբանոցների որբ-որբուհիներն իրենց կառավարչուհիների և ուսուցիչների հետ. այդտեղ էր և Թիֆլիսի զուռնաչիների խումբը։ Բուռն ովացիաների տակ Կովկասի Օգոստափառ Փոխարքան մի քանի անգամ դուրս եկաւ և շնորհակալութիւն յայտնեց ցուցարարներին։

Փետրուարի 4-ին, առաւօտեան, Թիֆլիսի բոլոր դպրոցների աշակերտ-աշակերտուհիները արձակուեցին երեք օրով։ Ցերեկուայ ժամը 12-ին հոծ բազմութեան ներկայութեամբ, Վրաստանի էկզարխ Պլատոնի գլխաւորութեամբ Երևանեան հրապարակում տեղի ունեցաւ գոհաբանական մաղթանք, որին ներկայ էին Կովկասի Օգոստափառ Փոխարքան, Մեծ Իշխանուհի Անաստասիա Նիկոլայևնան, Փոխարքայի օգնականները, նահանգապետը և ուրիշ զինուորական բարձր պաշտօնեաներ և անձեր։ Մաղթանքից յետոյ Օգոստափառ Փոխարքան զօրքի և ժողովրդի միահամուռ «ուռա»-ների տակ աւտոմոբիլով մեկնեց պալատը, որին հետևեցին զինուորական երաժշտական նուագախումբը և զինուորները։ Ժողովուրդը ցրուեց ցերեկուայ ժամը 3-ին. Նոյն օրը, ժամ 2-ին Վանքի եկեղեցում կատարուեց հանդիսաւոր մաղթանք Թիֆլիսի սրբազան առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսի գլխաւորութեամբ։

Երեկոյեան հրավառութիւն էր. զանազան տեղեր նուագում էր երաժշտութիւնը և փողոցներում տիրում էր մեծ կենդանութիւն։

***

Յունուարի 23-ին, Վանի շրջակայքում կատարած գիտական ուղևորութիւնից Թիֆլիս է վերադարձել կովկասեան թանգարանի աւագ վերահսկիչ պ. Ս. Տէր-Աւետիքեանը։ Նա ժողովել է 1150 կտոր ձեռագիր և յատուկ հսկողութեամբ ուղարկել Էջմիածին։ Իր բազմակողմանի ուսումնասիրութիւնները նա կըներկայացնի շուտով Կայս. Գիտութեանց ճեմարանին՝ հրատարակելու։

***

Գրականագէտ Ս. Թառայեան ծանրապէս հիւանդ լինելով, նրան տեղափոխել են Արամեան հիւանդանոց։ Նա նիւթապէս աննախանձելի դրութեան մէջ է։ Կազմուել է «Ընկերական օգնութիւն» յանձնաժողով նրան օգնելու։

***

Առաջին կարգի ռատնիկների զինուորակոչութիւնը. Բարձրագոյն հրամանով զինուորակոչութեան են հրաւիրւում, 1) այն ռատնիկները, որոնք մտել են օպոլչենիների զինուորակոչութեան ցուցակը 1916 թուից մինչև 1903 թ. և 2) այն ռատնիկները, որոնց հերթը դեռ չի եկել ու առ այժմ ազատ են զինուորակոչութիւնից, բայց իրենց յօժար կամքով ցանկանում են մտնել ծառայութեան։

***

Համագումար գեմստուոյի մասին. Առաջիկայ մարտ ամսին կայանալու է համագումար Կովկասեան գեմստուոյի ծրագիր մշակելու համար։ Այս առթիւ որոշ խմբեր խորհրդակցութիւններ են կազմում և նախապատրաստական աշխատանքներ կատարում։ Ցանկալի է, որ մեր գաւառի ինտելիգենցիան էլ զբաղուէր այդ խնդրով և արտայայտուէր մամուլի մէջ։

***

Մեզ հաղորդում են. Պետական շրջանային տեսուչ պ. Միխայլովը երկու ամիս—անցեալ դեկտեմբերին և յունուարին—անընդհատ այցելում էր Թիֆլիսի հայոց ծխական դպրոցները ծանօթանալու, թէ ինչպէս են դրուած ռուսական առարկաները՝ ռուսաց լեզուն, պատմութիւնը և Ռուսաստանի աշխարհագրութիւնը հայոց դպրոցներում։ Պ. Միխայլովը գտել է, որ յիշեալ առարկաները աւանդւում են կանոնաւոր, իսկ աշակերտութիւնը ցոյց է տալիս նկատելի առաջադիմութիւն։ Նա այդ մասին անձամբ և պաշտօնապէս յայտնել է իր գոհունակութիւնը Թիֆլիսի թեմի առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսին։

***

Անուանացուցադրութիւն փախստականների. Փախստականների միօրինակ անուանացուցադրութիւնը, որի կազմակերպումն և կատարումն յանձն է առել Կովկասի Հայոց Բարեգ. Ընկ. և նրա կից Հայկական Կենտրոնական Կոմիտէն, Թիֆլիսի, Գանձակի, Երևանի, Կարսի նահանգներում և Գարսկաստան, նշանակուած է սոյն փետրուարի 14-ին։

***

Թիֆլիսի շրջանային դատարանը որոշել է բանտից արձակել գրաւականով Ա. Ն. Միլովին 75,000 ռուբլով, պ. Զաքիկեան 30,000 ռ.ով և պ. Յովսէփեանին երաշխաւորութեամբ։

Դատախազը այդ առթիւ բողոքել է։

***

Թիֆլիսի քաղաքային դումայի համար իրաւատուներ ընտրողների 2-րդ և վերջին ցուցակի յայտարարութիւնը կլինի սոյն ամսի սկիզբներում, իսկ ընտրութիւնները հաւանական է, որ կայանան մարտի մէջ։

***

Յունուարի 25-ից արդէն բաց է Ս. Սարգսի և Ս. Գէորգի ծխական դպրոցների նախաճաշարանը, ուր ամեն օր նախաճաշում են 80 աշակերտ և աշակերտուհի։

***

«Մեղու» ընկերութիւնը Թիֆլիսի պ. Նահանգապետից արդէն իրաւունք է ստացել և մարտի վերջերին բաց է անելու իր աշխատանքի տան մէջ հանգուցեալ Սաթենիկ Օհանջանեանի անուան գրադարան-ընթերցարանը։

# Գեղարուեստ

## ԿԱՏՈՒԼԼԻՑ

—

Թշուառ Կատուլլ, ձգիր տենչեր խելագար
Եւ քո անդարձ կորուստն անդարձ համարիր...
Շողում էր քեզ երբեմն արև ոսկեվառ,
Երբ կոյսն էր քեզ ժպտում ախորժ, սիրալիր։
Որքա՜ն վայելեցիք ժամեր սիրահար,
Բոցավառուած և դու, և կոյսդ աննման.
Իրօք, ժպտում էր քեզ արև ոսկեվառ.
Վերջին քո սէրն էր դա— բոցոտ, խօլական...
Նա չէ սիրում այլևս... Եւ դո՛ւ, խելագա՛ր,
Կորզիր այդ սէրն անբաղդ, հեռու դու ձգիր.
Ձգիր անհետ, սանձիր կրքեր տիրաբար
Եւ անյողդողդ սրտով վշտերդ ամոքիր։
Հպա՛րտ գեղեցկուհի, Կատուլլն անսասան
Էլ չի հայցիլ երբէք շնորհ քեզանից.
Բայց դո՛ւ, եղեռնագո՛րծ, տրտում յաւիտեան
Կը տառապես նորա սիրոյ կարօտից...
Վայ քեզ, Թշո՛ւառ աղջիկ, լքուած, վշտագին,
Դու կը հեծես մենակ... Էլ ո՞ւմ սիրաբոյր
Ժպիտը կը շողայ դժբախտ քո դէմքին,
Էլ ո՞ւմ շուրթեր կայրէ բոցոտ քո համբոյր...
Մնաս բարով ընդմիշտ, Թշուա՛ռ սիրական,
Կատուլլն անհետ ձգեց իր սէր խօլական։

Ն. Խոջա-Մուրադ

# Արտաքին տեսութիւն

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ՄԻՍՍԻԱՆ ԻՏԱԼԻԱՅՈՒՄ

—

Եթէ հակագերմանական կօալիցիային պատկանող հսկայ հակապետութիւնները մինչև հիմա չեն յաջողել խորտակել կամ նոյն իսկ թուլացնել կենտրոնական պետութիւնների ոյժը—դրա ամենագլխաւոր պատճառներից մէկն էլ այն աններդաշնակութիւնն է, որ պատերազմի սկզբից ի վեր նկատուել է Քառեակ համաձայնութեան ռազմական և դիւանագիտական գործողութիւնների մէջ։

Բացի ռուսների առաջխաղացումից դէպի արևելեան Պրուսիա, գերմանական արշաւը դէպի Պարիզ կանգնեցնելու դիտաւորութեամբ՝ և որի շնորհիւ ֆրանսացիներին յաջողուեց Մառնի ափերից յետ մղել թշնամուն գրեթէ մինչև ներկայ ռազմագիծը՝ մենք այլ ևս չենք տեսնում փոքր ի շատէ կարևոր ռազմական ակտ, որ ցոյց տար, թէ դաշնակիցների գործողութիւնները համակերպւում են իրար։

Միևնոյն աններդաշնակութիւնը երևում է և այն դիւանագիտական քայլերի մէջ, որ պատերազմի սկզբից անում էին Քառեակ համաձայնութեան դաշնակիցները՝ Բալքանեան պետութիւններին իրենց կողմը քաշելու համար։ Սրա հետևանքն այն եղաւ, որ Բուլղարիան, ամենքի համար անսպասելի կերպով միացաւ գերմանական զինակցութեանը, իսկ Յունաստանն ու Ռումանիան ընկան այժմեան երկրուն վիճակի մէջ։

Այս ռազմական և դիւանագիտական գործողութեանց աններդաշնակութեան հանդէպ Կենդրոնական պետութիւնները ցոյց էին տալիս իրենց գրեթէ բոլոր քայլերի մէջ սերտ միութիւն։ Նրանց գլխաւոր շտաբները գրեթէ միացած էին, իսկ քաղաքական ակտերը կատարւում էին Բեռլինի հրահանգներով։

Թշնամու ոյժի, ինչպէս և սեփական թուլութեան գլխաւոր պատճառ համարելով Քառեակ համաձայնութեան ընդհանուր գործերի անկազմակերպ վիճակը՝ Անգլիան և Ֆրանսիան, այս աշնանից սկսած լուրջ միջոցներ ձեռք առան պատերազմի հետ կապ ունեցող իրենց բոլոր քայլերի մէջ մի կօօրդինացիա մտցնելու համար։ Դրա համար երկու պետութեանց զինուորական և դիւանագիտական ներկայացուցիչները մի քանի անգամ տեսնուեցին իրար հետ, հարթեցին իրենց մէջ գոյութիւն ունեցող տարաձայնութիւնները և մշակեցին մի ընդհանուր գործելակերպ թէ ռազմական, թէ քաղաքական և թէ մինչև իսկ ֆինանսական գործառնութիւնների համար։

Դրանից յետոյ մնում էր այս համաձայնութիւնն ընդարձակել այնպէս, որ Իտալիան և Ռուսաստանն էլ նրա մէջ առնուէին։ Առաջին հերթին դրուած էր Իտալիայի խնդիրը, որովհետև նա մինչև այժմ այնքան տարամերժ քաղաքականութիւն էր վարում, որ կարծէք Քառեակ համաձայնութեան անդամ չը լինի։ Չնայած որ կռիւ է յայտարարել թէ Տաճկաստանին և թէ Բուլղարեային, նա գրեթէ ոչնչով չէ մասնակցել այդ պետութեանց դէմ իր դաշնակիցների կողմից սկսուած ձեռնարկութիւններին։

Այս դրութիւնն այլևս շարունակուել չէր կարող։ Պէտք էր ճշտիւ որոշել Իտալիայի դերը Քառեակ համաձայնութեան մէջ. պէտք էր պարզել նրա մասնակցութեան չափը ներկայ պատերազմում և, դրա հետ միասին, նրա և իր դաշնակիցների ռազմական և դիւանագիտական քայլերի մէջ ցանկալի ներդաշնակութիւն առաջ բերել։ Այս նպատակով վերջին օրերս ֆրանսական կառավարութեան ներկայացուցիչները—Բրիան, Բուրժուա, Ալբերտ Թոմ—մի քանի բարձրաստիճան զինուորական պաշտօնեաների հետ միասին գնացին Իտալիա։ Այն սրտագին ընդունելութիւնը, որ ցոյց տուեց իտալական ժողովուրդը Ֆրանսիայի ներկայացուցիչներին, ոչ մի կասկած չէ թողնում, որ նրա համակրանքն ամբողջովին այս համերաշխութեան կողմն է։ Եւ այն օժանդակութիւնը, որ Իտալիան պիտի տար իր դաշնակիցներին, քննուեց անցեալ շաբաթ մի շարք գաղտնի խորհրդակցութիւնների մէջ, որ ունեցան իրար հետ երկու կառավարութեանց ներկայացուցիչները։

Այս խորհրդակցութիւնների հետևանքը կարելի է կռահել «Daily Telegraph»-ի հաղորդագրութիւնից, որից երևում է, թէ նրանց զբաղման նիւթն են եղել առաջին՝ Իտալիայի մասնակցութիւնը Սալոնիկի էքսպեդիցիային, երկրորդ՝ ռազմամթերքների պատրաստութեան գործն և երրորդ՝ այն դիւանագիտական խորհրդին, որ ծրագրուած է հաստատել Պարիզում՝ Քառեակ Համաձայնութեան քաղաքական ընդհանուր գործերը վարելու համար։ Պէտք է ենթադրել, որ վերոյիշեալ խորհրդակցութեանց ժամանակ շօշափուել է նաև Իտալիայի և Գերմանիայի յարաբերութեան հարցը, որովհետև ֆրանսական միսսիայի մեկնելուց անմիջապէս յետոյ իտալական մամուլը անսովոր թշնամական լեզու է բանեցնում Գերմանիայի հանդէպ։ «Messagero»-ն, օրինակ, գրում է. «Ազգը պէտք է ի նկատի ունենայ, որ Իտալիան իր միւս դաշնակիցների հետ ընդհանուր պատերազմ է սկսել ընդհանուր թշնամու դէմ, որ իսկապէս Գերմանիան է. որովհետև այդ պետութիւնն է կռուի մէջ գցել Աւստրիային»։

Ֆրանսիայի մինիստր-նախագահ Բրիանը մամուլի ներկայացուցիչների մօտ մեծ գոհունակութեամբ է խօսել իր միսիայի հետեւանքների մասին։ «Թշնամին մեծ առաւելութիւն ունի—ասում է նա. նրա ուժերը դասաւորուած են Եւրոպայի կենտրոնում, մինչդեռ դաշնակիցների ուժերը ցրուած են շրջագծերի վրայ։ Այդ պատճառով էլ դաշնակիցների մէջ պէտք է տիրէ ամենասերտ միութիւն և գործողութիւնների լիակատար ներդաշնակութիւն։

Այս ցանկութիւններն այժմ Անգլիայի, Ֆրանսիայի և Իտալիայի վերաբերմամբ իրագործուած են։ Պէտք է յուսալ, որ նրանք շուտով կիրագործուին նաև Ռուսաստանի վերաբերմամբ, և որ այսուհետև դաշնակիցները կենտրոնական պետութիւններին կհակադրեն այն քաղաքական համերաշխութիւնն ու ռազմական ներդաշնակութիւնը, որ անհրաժեշտ է թշնամու ահարկու ուժը խորտակելու համար։

Ա. Ջամալեան

---

## ՏՊԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՊՈԼՍՈՅ ԿԵԱՆՔԷՆ *)

—

Անմիջապէս բարձրացանք դէպի բլուրը և հեռացանք բնակութիւններէն․ դալարագեղ դաշտերուն մէջէն կերթայինք այլ ևս խաղաղած և գրեթէ խնդալով ու կատակելով մեր կացութեան վրայ։ Ինչքան բարձր կզգայինք ինքզինքնիս մեր թշնամիներէն․ անիրաւ տեղը հալածուող մարդոց տեսակ մը ազնուական համակրութիւն տանելի կը դարձնէր մեզ մեր վիճակը։ Արևը բարձրացած էր արդէն և գիշերուան ցօղէն թարմացած անհամար վայրի ծաղիկներ մեղմօրէն կը բանային իրենց բաժակները․ քաղցր և գաղջ մթնոլորտը մայիսեան առաւօտին տոգորուած էր թարմ կանանչի և վայրի ծաղիկներու բուրումով։ Հետզհետէ մոռցանք մեր ցաւը ու կասկածները․ մեր հոգիներ պայծառացան, սկսանք նոյնիսկ խօսիլ գրականութեան մասին։ Կը յիշեմ որ բաղդատական գնահատութիւն մը կընէինք Գարլայլի և Մաթէրլինկի․ որքան հեռու էինք Թուրք ոստիկաններու տարափէն․ կարծես կը դիմագրաւէինք մեր թշնամիին մեր մտածումները ազատելով իրենց առթած մտահոգութիւններէն։ Երբ մեր խօսակցութիւնը հանդրուանի մը կը հասնէր, պահ մը կը լռէինք և կանդրադառնայինք որ փախստականներ ենք։

— Ո՞ւր կերթանք այսպէս, ո՛ւր պիտի անցնենք գիշերը։

Հարցումը առանց պատասխանի կը մնար, լուռ ու գլխիկոր կը շարունակէինք քալել ու մեր մտածումները կը վերադառնային մեր տուները, ուր անմխիթար և սարսափած մայրեր մեր լուրերուն կսպասէին։ Երբեմն կը խօսէինք նաև մեր աքսորեալ բարեկամներուն վրայ և տարբեր կարգի գողտր տխրութիւն մը կը պատէր մեր էութիւնը։

Հաւաքական և անարդար հալածանքը, որուն ենթարկուած էինք բուռն զայրոյթով մը կը գերագրգռէր մեզ, ու մենք որ հրաշքով մը ազատ մնացած էինք, այլ ևս մէկ մտահոգութիւն ունէինք․ այն էր դժբախտութեան պարագային պահել մեր հոգեկան արիութիւնը և մեր անարժան թշնամիներուն ներկայանալ այնպէս ինչպէս արժանի էր հայ մտաւորականներու։ Այդ տրամադրութիւնը բարձր ու անվթար պահելու համար կը ջանայինք որքան կարելի է չանդրադառնալ մեր կացութեան ու խօսիլ ու խորհիլ տարբեր բաներու մասին։

Իմ բարեկամիս չափաւոր, հանդարտ ու իմաստուն խօսակցութիւնը գիս կը կազդուրէր․ կարծես հոգիս թևեր կառնէր ու կը հեռանար դժբախտ երկրին հորիզոններէն, այնպէս որ երբ մօտակայ անտառակ մը հասանք, վերստին գտած էի իմ ներքին անդորրութիւնս․ հոն, ծառերու հովանիին ներքև նստեցանք մարգագետնի վրայ ու հաճելիօրէն ազդուած բնութեան գեղեցկութենէն գրեթէ պաղարինով որոշեցինք մեր ընելիքը։

Ո՞վ կրնար մեզ ապաստան տալ այդպիսի օրերու մէջ, եթէ ոչ մեզի վիճակակից մը․ մտաբերեցինք գրող բարեկամ մը որ Գատըգիւղ կը բնակէր և որոշեցինք իրեն երթալ, եթէ արդէն ձերբակալուած չէր։ Արդէն Գատըգիւղի ճամբուն վրայ էինք և կրնայինք գոնէ մէկ ժամ հանգչիլ։ Օրը կիրակի ըլլալուն հետզհետէ անտառակը լեցուեցաւ զբօսնող բազմութեամբ մը․ հայեր չկային և այդ վայրին մէջ մենք բոլորովին անծանօթ էինք․ գնչուհիներու գունագեղ խումբերը որոնք կառաջարկէին բաղդ նայիլ, վաճառողներու սուր և միօրինակ աղաղակները մեզ կը հանէին կարծես հեռաւոր և օտար աշխարհէ մը։ Ընկողմանած դալարքին վրայ, հետևելով ծառերու մէջէն մաղուող ճառագայթներու խաղերուն, կը խօսէինք դարձեալ հայ և օտար գրականութեան վրայ, երբեմն կը վիճէինք և ջերմապէս կը պաշտպանէինք մեր նախասիրած հեղինակը․ այդ պահուն մեր խօսակցութեան հետևող մը ոևէ կերպով չէր կրնար գուշակել, թէ ինչ մահացու սպառնալիք կախուած էր մեր գլխուն վերև։

Ձերբակալման պարագային առանց գիրքի չի մնալու համար, ես հետս առած էի «Խոնարհներու գանձը» և բարեկամս Ս. Գիրք մը։ Դանիէլի գիրքէն էջեր կարդացինք, մինչ կոյր աշուղ մը իր սազովը հեռուն նստած, կերգէր թրքական տարփաւէտ և տխուր երգ մը․ աշուղին կերկերաձայն և ողբագին եղանակները հովը կը բերէր մեզի կարծես երկարացնելով շեշտերը և չեմ գիտեր ինչ խառնուրդ մը վրդովմունքի, կարօտներու և մեծավայելուչ գեղեցկութեան կը յուզէր սիրտս ուժգնօրէն։ Մեր կացութեան մէջ վտանգաւոր էր անձնատուր ըլլալ այդ կարգի զգացմունքներու, պէտք էր պահել մեր ջիղերը ամուր, պահել թարմութիւնը և ուժը մեր զայրոյթին և հոգեկան արիութեան և կարծես երկուքս ալ զգալով առիկա ոտքի ելանք։

Գատըգիւղ հասնելով մեր բարեկամը մեզ ընդունեց մեծ հաճոյակատարութեամբ։

—Զիս ալ կը փնտռեն ըսաւ, բայց իմ հասցէս չեն գիտեր, կրնանք հոս անցնել գիշերը ապահով կերպով։

Որոշեցինք որ իր տան տիրուհին մեզ ներկայացնէ իբր իր հայրենակիցները (մօտակայ գաւառէ մըն էր ինքը), որոնք մէկ երկու օր մնալու համար Պոլիս եկած են։ Բայց հազիւ թէ տան տիկինը զիս տեսաւ, ժպտելով բարևեց և դեռ մենք բան չի յայտնած ըսաւ թէ զիս կը ճանչնար։

Մեր ծրագիրը փոխեցինք և ես ստիպուած գացի մեր մէկ ազգականին, որ նոյն թաղը կը բնակէր․ ոչինչ չպիտի յայտնէի, բայց անոնք արդէն լսած էին իմ մասին, յուզուած կարեկցութեամբ մը ընդունեցան զիս և հրաւիրեցին մնալ երկար օրեր, որպէսզի ոստիկանները հետքս կորսնցնեն։

Մինչև կէս գիշեր մնացինք այդ սքանչելի մարդոց մօտ խօսելով ընդհանուր կացութեան և ամեն մէկ հայու սպառնացող վտանգին վրայ․ իմ գրող բարեկամներս ալ եկած էին ու մեր զգուած հիւրընկալութիւնը, ամբողջ օրուան մէջ անցուցած յուզումի զանազան ժամերը, զիս կը լեցնէին հակասական զգացումներով։

Զգացուած և գերագրգռուած, ամեն բանէ կարծես պատրաստ էի արտասուելու և տարօրինակ կորովի ուժ մը կսպառէի գոնէ չի յայտնելու համար իմ հոգիիս մէջ դառացող փոթորիկները։

Չարչարանքներով լեցուն գիշեր մը անցուցի, կէս քուն, կէս արթուն, ընդոստ կը նստէի անկողնիս մէջ ու մտիկ կընէի։ Գիշերն ի բուն նոր կանչուած զինուորական դասերը կանցնէին փողոցէն ռազմագաշտ երթալու համար։ Գիշերն ի բուն կը լսէի հազարաւոր Թուրք զինուորներու քայլերու աղմուկը, որ անընդհատ կը հեռանար ու կը վերսկսէր, ու ինծի կը թուէր որ թշնամին իր բիրտ ներբաններուն տակ կը ճզմէր սիրտս ու կանցնէր ու նաև ինչ որ կար հոն գեղեցիկ, թանկագին ու ազնուական, մեր հայրերէն մեզ աւանդուած։

Զապէլ Եսայեան

---

*) Տես «Համբաւաբեր» № 6։

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 7

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

## ՍԱՆԱՀՆԻ ՈՐԲԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ

(Շարունակութիւն)

| № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող կամ մէկ ծնող | Ծնողների տեղը | Գրագէտ | ՏԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւագեան Վարսենիկ | Արդամետ | 18 | — | — | այո | |
| 2 | Ամիրզադեան Խաչատուր | Վան | 13 | հայր | — | » | |
| 3 | Աւետիսեան Յարութիւն | Մարմետ | 12 | — | — | ոչ | |
| 4 | Աւետիսեան Վաղարշակ | Բայազետ | 12 | հայր | — | այո | |
| 5 | Ալէքսանեան Նեկտար | Վան | 11 | — | — | այո | |
| 6 | Անտոնեան Մանուկ | Դարաբէկ | 10 | — | — | ոչ | |
| 7 | Աբգարեան Երանուհի | Մարմետ | 10 | — | — | » | |
| 8 | Աւջարեան Գրիգոր | Ալիւր | 9 | մայր | անյայտ | » | |
| 9 | Աթաշկարեան Մայրիկ | Վան | 13 | — | — | այո | |
| 10 | Ամիրզադեան Վարդան | » | 9 | մայր | » | ոչ | |
| 11 | Աւտոյեան Հայկանուշ | Մարմետ | 9 | » | » | » | |
| 12 | Արմաղանեան Սաթենիկ | Զօպանօղլի | 8 | — | — | » | |
| 13 | Անդրանիկեան Անթառամ | Առեղ | 5 | մայր | — | » | |
| 14 | Բզոյեան Խազալ | Խառաղլ | 14 | հայր մ. | անյայտ | » | |
| 15 | Բարխոյեան Յակոբ | Վան | 15 | — | — | այո | |
| 16 | Բարխոյեան Տիգրան | » | 13 | մայր | — | » | |
| 17 | Բաւէեան Մարիամ | Արտամետ | 12 | — | — | ոչ | |
| 18 | Բաղդոյեան Յովհաննէս | Երէրին | 12 | մայր | — | այո | |
| 19 | Բերբերեան Վարսենիկ | Վան | 11 | — | — | » | |
| 20 | Բարսեղեան Վարդան | Մարմետ | 11 | հայր | — | ոչ | |
| 21 | Բդէեան Կարապետ | Փայխներ | 7 | — | — | » | |
| 22 | Գրիգորեան Աստղիկ | Վան | 9 | հայր | — | » | |
| 23 | Գրիգորեան Մեսրոպ | Տապականք | 12 | մայր | — | » | |
| 24 | Դաւթեան Դաւիթ | Մարմետ | 3 | հայր | — | » | |
| 25 | Զիրոյեան Երանուհի | Մարքս | 13 | — | — | » | |
| 26 | Զիրոյեան Գայիանէ | » | 7 | հայր | — | » | |
| 27 | Էլոյեան Մքրօ | Բագով | 6 | — | — | » | |
| 28 | Էլոյեան Լուսիկ | » | 8 | — | — | » | |
| 29 | Թանգոյեան Մաքրուհի | Առնա | 7 | — | — | » | |
| 30 | Թարգիմուրադեան Արտաւազդ | Կոփ | 7 | մայր | անյայտ | » | |
| 31 | Թորոսեան Նուարդ | Ալիւր | 10 | հայր | տաճ. զին. | » | |
| 32 | Լակլկեան Բօզօ | Աղըղ | 12 | հայր | անյայտ | այո | |
| 33 | Լակլկեան Իգիթ | » | 10 | մայր | « | » | |
| 34 | Խիզարչեան Վահրամ | Վան | 10 | հայր | — | ոչ | |
| 35 | Խլոյեան Արմենակ | Կենդանանց | 10 | » | տաճ. զին. | » | |
| 36 | Խիզարչեան Վարազդատ | Վան | 7 | » | — | » | |
| 37 | Խիզարչեան Վարդան | » | 6 | » | — | » | |
| 38 | Խիզարչեան Դաւիթ | » | 5 | — | — | » | |
| 39 | Կուկազեան Եղիսաբէթ | Մարմետ | 5 | մայր | — | » | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 40 | Կարապետեան Սալդատ | Վան | 3 | հայր մ. | — | » |
| 41 | Կապոտեան Համազասպ | Տուլաշէն | 9 | — | — | » |
| 42 | Կոտանեան Հայկազն | Շուշանեան | 9 | — | — | » |
| 43 | Կապոտեան Աստղիկ | Տուլաշէն | 11 | — | — | այո |
| 44 | Կուկալեան Փանոս | Մարմետ | 12 | մայր | — | » |
| 45 | Կապոտեան Արուսեակ | Տուլաշէն | 13 | — | — | ոչ |
| 46 | Կարիպեան Համասփիւռ | Նորավան | 12 | հայր | — | « |
| 47 | Հիւսեան Աւետիս | Տուլաշէն | 8 | — | — | » |
| 48 | Ղարիբեան Արշակ | Նորովան | 10 | հայր | — | » |
| 49 | Ղլաչեան Մկրտիչ | Շամշադին | 13 | — | — | » |
| 50 | Ղլաչեան Գարեգին | » | 12 | — | — | » |
| 51 | Ղուկասեան Թովմաս | Մարմետ | 8 | մայր | — | » |
| 52 | Ղարիբեան Ղարիբ | Բիթլիս | 4 | — | — | » |
| 53 | Մելոյեան Եւգինէ | Կիրաշէն | 13 | հայր | — | » |
| 54 | Մանասերեան Իսկուհի | Պատականց | 12 | — | — | » |
| 55 | Մելիք-Աւագեան Նուբար | Խնձորկին | 12 | — | — | » |
| 56 | Մանասեան Նեկտար | Կեմ | 12 | — | — | » |
| 57 | Մուխսեան Ռուբէն | Արճէշ | 12 | — | — | » |
| 58 | Մարտիրոսեան Փիւրիւզ | Սիվորկ | 12 | — | — | » |
| 59 | Մխոյեան Գրիգոր | Կամուրդ | 12 | — | — | » |
| 60 | Մելիք-Սաֆարեան Ռեբեկա | Ճանիկ | 12 | — | — | » |
| 61 | Մելոյեան Երանուհի | Գերաշէն | 11 | մայր | — | այո |
| 62 | Մնացականեան Սինամ | Բեշհագամեր | 11 | հայր | — | ոչ |
| 63 | Մինասեան Յովհաննէս | Խոռանց | 11 | մայր | անյայտ | այո |
| 64 | Մուշիկեան Պարգև | Երզրում | 10 | մայր | — | » |
| 65 | Մանուկեան Զօզէ | Կարակալ | 10 | — | — | » |
| 66 | Մուխսեան Բագօ | Ակնելֆ | 9 | — | — | ոչ |
| 67 | Մարգարեան Շուշանիկ | Աւերակ | 9 | — | — | » |
| 68 | Մարտիկեան Մուրադ | Զօպանօղլի | 13 | — | — | » |
| 69 | Մանուկեան Երուանդ | Նորավան | 9 | — | — | » |
| 70 | Մ. Յարութիւնեան Արշալոյս | Ծւստան | 9 | — | — | » |
| 71 | Մանուկեան Մարիամ | Կարակալ | 9 | — | — | » |
| 72 | Մարտիրոսեան Ալթուն | Պատական | 9 | — | — | » |
| 73 | Մ. Յարութիւնեան Պետրոս | Ծւստան | 8 | — | — | » |
| 74 | Մուխսեան Մուշեղ | Արճէշ | 7 | — | — | » |
| 75 | Մկրտչեան Սիրուն | Վան | 7 | — | — | այո |
| 76 | Միքայէլեան Կադիկ | Բերկրի | 7 | — | — | ոչ |
| 77 | Մինասեան Գասպար | Փրխուս | 7 | մայր | — | » |
| 78 | Մ. Կարնեան Արեգնազ | Ջուղկախ | 7 | » | — | » |
| 79 | Մկրտչեան Մամբրէ | Վան | 6 | մայր | — | » |
| 80 | Մ. Յարութիւնեան Սիրուն | Ծւստան | 6 | — | — | » |
| 81 | Մինասեան Յարութիւն | Փրխուս | 3 | — | — | » |
| 82 | Միքայէլեան Սենեքերիմ | Վան | 5 | մայր | — | » |
| 83 | Յակոբեան Սաթենիկ | Վան | 2 | — | — | » |
| 84 | Յովհաննիսեան Սինամ | » | 5 | — | — | » |
| 85 | Յովոյեան Սաթենիկ | Նորաշէն | 4 | հայր մ. | անյայտ | » |
| 86 | Յովհաննիսեան Վարդգէս | Հիւլի | 7 | հայր | տաճ. գին. | » |
| 87 | Յովհաննիսեան Այրութ | Փայխներ | 7 | — | — | » |
| 88 | Յարոյեան Արամ | Կողպանց | 8 | — | — | » |
| 89 | Յարութիւնեան Նարգիզ | Մոխրաբերդ | 8 | — | — | » |
| 90 | Յակոբեան Կարապետ | Կոզակ | 9 | հայր | — | » |
| 91 | Յարութիւնեան Համասփիւռ | Կիւսնենց | 9 | » | » | » |
| 92 | Յարութիւնեան Սոնա | Օրօրան | 9 | — | — | » |
| 93 | Յովհաննիսեան Դիլբար | Արճէշ | 11 | » | » | » |
| 94 | Յակոբեան Աստղիկ | Երէմէրի | 11 | » | » | » |
| 95 | Յակոբեան Աւետիս | Կոզակ | 11 | » | » | այո |
| 96 | Յովհաննէսեան Սաղաթել | Արծափ | 12 | մայր | — | ոչ |
| 97 | Յովսէփեան Աբրահամ | Պուլանըղ | 12 | » | » | ոչ |
| 98 | Յովհաննիսեան Համասփիւռ | Նորավան | 12 | — | — | ոչ |
| 99 | Յարոյեան Սիրուն | Ս. Վարդան | 12 | — | — | այո |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 100 | Ներսիսեան Արուսեակ | Բայազետ | 14 | — | — | այո |
| 101 | Նազրոյեան Սաթենիկ | Ոզմ | 13 | — | — | ոչ |
| 102 | Նշիկեան Արուսեակ | Բայազետ | 12 | — | — | ոչ |
| 103 | Նադալեան Համազասպ | » | 12 | — | — | այո |
| 104 | Նշիկեան Հրաչեայ | » | 12 | — | — | այո |
| 105 | Ներսիսեան Վանուհի | » | 12 | — | — | այո |
| 106 | Նասոյեան Երուանդ | Զօպանօղլու | 10 | հայր մ. | անյայտ | ոչ |
| 107 | Նազրոյեան Երուանդ | Խոպ | 8 | — | — | ոչ |
| 108 | Ներսիսեան Ազնիւ | Բայազետ | 15 | — | — | ոչ |
| 109 | Նադալեան Աստղիկ | » | 7 | — | — | ոչ |
| 110 | Ներսիսեան Իսկուհի | Ծայծակ | 7 | — | — | ոչ |
| 111 | Շաղոյեան Սիրուն | Աւերակ | 7 | » | » | ոչ |
| 112 | Շակրչեան Գուրգէն | Շուշանց | 8 | » | » | ոչ |
| 113 | Շաքարեան Գուրգէն | Ոզմ | 12 | » | » | ոչ |
| 114 | Զչեան Սիրուն | Վան | 10 | մայր | անյայտ | այո |
| 115 | Զլոյեան Գէորգ | Բայազետ | 10 | մայր | անյայտ | այո |
| 116 | Զօրաւեաեան Փանոս | Վան | 11 | հայր | Պոլիս | այո |
| 117 | Զօրաւեաեան Աննա | » | 13 | » | » | այո |
| 118 | Պետրոսեան Եղիազար | Կառպ | 10 | — | — | ոչ |
| 119 | Պլկեան Յովհաննէս | Կանձակ | 10 | — | — | ոչ |
| 120 | Պետոյեան Մարգար | Լիմ | 8 | — | — | ոչ |
| 121 | Պապոյեան Գաբրիէլ | Կիրաշէն | 7 | » | » | ոչ |
| 122 | Պատուրեան Վարդանոյշ | Ճանիկ | 12 | » | » | ոչ |
| 123 | Պատուրեան Հմայեակ | » | 5 | » | » | ոչ |
| 124 | Պերպեր-Գրիգորեան Գրիգոր | Վան | 5 | » | » | ոչ |
| 125 | Ռէս-Յովհաննիսեան Մանուկ | Կարած-քար | 13 | » | » | ոչ |
| 126 | Ռէս-Յովհաննիսեան Գէորգ | » | 7 | » | » | ոչ |
| 127 | Սօլաքեան Յարութիւն | Վան | 3 | հայր մ. | անյայտ | ոչ |
| 128 | Սինոյեան Իսկուհի | Ծուստան | 4 | հայր | տաճ. զին. | ոչ |
| 129 | Սարգսեան Լուսիկ | Պանոն | 6 | » | » | ոչ |
| 130 | Ստեփանեան Սարգիս | Աւէնաջաֆ | 6 | — | — | ոչ |
| 131 | Սինոյեան Վարսենիկ | Ծուստան | 6 | » | » | ոչ |
| 132 | Ստեփանեան Սարգիս | Վան | 6 | » | » | ոչ |
| 133 | Սաֆարեան Աւետիս | Բիթլիս | 6 | » | » | ոչ |
| 134 | Սիմէօնեան Մարիամ | Նորավան | 8 | մայր | — | ոչ |
| 135 | Սանդրագործեան Թոռնիկ | Վան | 8 | » | » | այո |
| 136 | Սանոյեան Մարիամ | » | 9 | հայր | — | ոչ |
| 137 | Սանդրագործեան Գառնիկ | » | 9 | — | » | այո |
| 138 | Սամակլեան Սինամ | » | 9 | » | » | այո |
| 139 | Ստեփանեան Ստեփան | » | 11 | » | » | այո |
| 140 | Սաֆարեան Անդրանիկ | Բիթլիս | 11 | — | — | այո |
| 141 | Սարգսեան Սաթենիկ | Արճէշ | 11 | » | — | ոչ |
| 142 | Սարգսեան Իսկուհի | Պանոն | 11 | » | — | ոչ |
| 143 | Սողոմոնեան Գիւլլիզար | Շամշադին | 12 | » | — | ոչ |
| 144 | Սինոյեան Արմենուհի | Ծւստան | 13 | հայր | տաճ. զին. | ոչ |
| 145 | Սանդրագործեան Պարգև | Վան | 13 | — | — | ոչ |
| 146 | Վարդանեան Խաչատուր | Ումրուպճի. | 12 | — | — | ոչ |
| 147 | Վարդոյեան Սաթենիկ | Կառպ | 11 | մայր | — | ոչ |
| 148 | Վարդանեան Մարիցա | Բիթլիս | 11 | » | — | այո |
| 149 | Վարդանեան Շամամ | Ումրուպճի. | 10 | » | — | այո |
| 150 | Վարդանեան Ասանէթ | Բիթլիս | 5 | » | — | այո |
| 151 | Վարդանեան Եղջօ | Ումրուպճի. | 4 | հայր | — | այո |
| 152 | Տիգրանեան Զմրուխտ | Խաչան | 8 | » | — | այո |
| 153 | Ցիրգիւլեան Վարդ | Վան | 2 | » | — | այո |
| 154 | Ցիրգիւլեան Սանդուխտ | » | 6 | » | — | այո |
| 155 | Ցիրգիւլեան Արամ | » | 8 | » | — | այո |
| 156 | Ցիրգիւլեան Վահրամ | » | 9 | հայր | — | այո |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 157 | Ֆիրզիւլեան Օգսէն | » | 12 | » | — | այո |
| 158 | Քրիստինէ | » | 11 | » | » | այո |
| 159 | Գայիանէ | Աղեմ | 7 | | | ոչ |
| 160 | Կարապետ | Ալճաւազ | 7 | մայր | — | ոչ |
| 161 | Ջէյրան | Օրօրան | 7 | » | » | ոչ |
| 162 | Նախօ | Լիզ | 5 | » | — | ոչ |
| 163 | Սիրվարդ | Վան | 5 | հայր մ. | անյայտ | ոչ |
| 164 | Նանօ | » | 4 | | | ոչ |
| 165 | Պլէ | » | 3 | | | ոչ |
| 166 | Ազնիւ | » | | | | |
| 167 | Հմայեակ | » | 3 | | | |

(Կը շարունակուի)

Տպ. Ն. Ազանեանի